# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՐՈՒՑ

Ս Ր Բ Ո Յ Ն

# ՇՄԱՒՈՆԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

Ե Ւ Ճ Ա Ռ

# Ի ՎԿԱՅՍՆ ԱՐԵՒԵԼԻՑ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի Տպարանի Մխիթարեանց

ՌՅԳ—1854

# ԱԶԴ

Ընդ գեղեցկաւէտ վարուց Ս. Շմաւոնի Գարնեց եպիսկոպոսի, գրելոյ յականատեսէ և 'ի հաւատարիմ վկայէ, կարգեմք 'ի Սոփերս և ազգօրովախառն ներբող կամ ողբս 'ի Վկայսն Արեւելից. որոյ հեղինակ Ասորի անշուշտ, թէ Եփրեմ իցէ և թէ Մարութա, ոչ գիտեմք. զի զերկոսեանս ասեն գրեալ զվարս սրբոցս, իսկ առաջնոյն ընծայի հատուած մի 'ի Ճառէս, վասն ուրեմն պարագրեալ առ 'ի մէնջ. իսկ զայժմուս գտեալ 'ի հնում երկաթագիր մատենի՝ թերի որպէս և էին 'ի գլխոյ 'ի միջոյ և 'ի վերջոյ, տամք 'ի լոյս, ոչ ունելով յայս 'ի

մօտոյ ուսանեք լինել զպակասորդն, այլ 'ի ժամանակին անյայտ ապառ-
տան աւարտեալ, եթէ չիցէն իսպառ
բնաջինջ ։

գետնք ելցեն 'ի Քետացւոցն և աւե-
րեսցեն զերկիրն, այսինքն է Յոյնք,
որ գրգռեցան ընդ նոսա 'ի պատե-
րազմ Ա. և Եզեկիէլ մարգարէա-
ցաւ վասն Գոգայն և Մագոգայն,
այսինքն է Յոյնք. և Դանիէլ մարգա-
րէացաւ վասն փոքրիկ եղջերին որ
բուսաւ, և անկանելին եւս երեք եղ-
ջերք յերեսաց նորա, և բանս զբարձ-
րելոյն խօսեցաւ, այսինքն է Անտիո-
քոս անօրէն. որ յամի հարիւրորդի
քառասներորդի և երրորդի Թագա-
ւորութեանն Յունաց, այսինքն է
ամն վեցերորդ նորին Անտիոքու, եւ
յԵրուսաղէմ և էառ զսեղանն ոսկի
և զամենայն սպասս տաճարին. պղ-
ծեաց զտաճարն և շինեաց 'ի նմա
բագինս, եմոյծ անդ զօտարս, եհան
զընտանիսն, նեղեաց զքահանայսն
և պղծեաց զսրբութիւնն, և եհեղ
զարիւն արդար 'ի տաճարին. արար
դէշ զմարմինս արդարոցն գազանաց
երկրի և թռչնոց երկնից: Դարձան
բազումք հրամանաւ նորա 'ի ճշմա-
րիտ օրինացն Աստուծոյ, և մատու-
ցին զոհս դիւաց, և խոստովանեցին

տանջաւք 'ի հաւատս ճշմարիտս և
ուսմանն. զի մեծաւն հաղթող մարդ
'ի միում աւուր, զի ոչ լուծին ըզ
շաբաթն. և առէին ցխողխողիչսն,
Թէ Մեռցուք միամիտ սրտիւ վասն
հարցն օրինաց, ունիմք վկայ զեր-
կինս և զերկիր. զի առանց յանցա-
նաց և դատապարտանաց կորուսանէք
զմեզ: Նա զբազում կանայս կոտո-
րէին, որ Թլփատէին զորդիս իւ-
րեանց, և զմանկունսն հեղձամղձուկ
արարեալ կախէին զմարցն պարա-
նոցաց. և զկէսս՝ վասն զի ոչ առին
յանձն պղծել աղտեղի կերակրովք՝
կոտորէին. և լուծին զուխտն սըր-
բութեան, և եղեւ սուգ մեծ յԵ-
րուսաղէմ: Հեծէին ծերք և իշ-
խանք, կոյսք և երիտասարդք 'ի հի-
ւանդութեան ծնկէին, եղծաւ ա-
պականեցաւ գեղ գեղեցիկ կա-
նանց, և արդ հարսունք որ նստէին
յարածածուկ առագաստի՝ 'ի սուգ
մտեալ էին: Զամօթ զգեցաւ ամե-
նայն տունն Յակոբայ. մտայոյզ
մտախորհ լինէր Մատաթիա, մա-
նէր 'ի պաշարուածն մտաց, հեծէր

հեծութիւն սրտին դառնացելոյ և
ասէր. Վա՜յ մեզ, զի՞նչ եհաս անտա֊
նել մեզ, զանհնարին չարիս ժողո֊
վրդեանս և զթշուառութիւն սուրբ
քաղաքիս. զի տաճարն որ մատ֊
նեցաւ 'ի ձեռս օտարաց և ապակա֊
նեցաւ վայելչութիւն փառաց մե֊
րոց. և արդ բնաւ զի՞ պիտոյ են մեզ
այս կեանքս: Դարձեալ քաջալերէր
և ասէր. Իմացայք յամենայն դարս,
զի որ սրտի մտօք զԱստուած յոյս
առնեն, և ոչ երբէք սասանին. և
արդ մի երկնչիք 'ի բանից տան ամ֊
պարշտի, զի փառք նորա 'ի հող ի֊
ջանելոց են, և անդամք մարմնոյ
նորա կերակուր որդանց. այսօր
հպարտացեալ ամբարտաւանէ, և
վաղիւ ոչ գտանի ուրեք 'ի միջի. զի
դառնայ 'ի հող և կորնչի ամենայն
խորհուրդք նոցա: Իբրեւ ետես զմի
տս յորդւոց իւրոյ ազգին, թէ անի֊
րաւէ և սաէ ճշմարտին Աստուծոյ,
զգեցաւ զօրութիւն և եղեւ նախան֊
ձաւոր, և խնդրեաց նա վրէժ իբրեւ
դատաւոր. հար սպան և արար զնա
զոհ, փոխանակ զի զոհեաց նա մեհո֊

որ պաշտամանն. եհեղ յերկիր զա-րիւն նորա, փոխանակ զի հեղու-անկաւ զինի կռոցն մատուցեաց. փո-ղոտեաց զնա 'ի վերայ աղտեղի սե-ղանոյն, և եւս յաւել յաղտեղու-թիւնն. սպան զզօրացուցիչն որ կայր 'ի վերայ և տայր բռնի զզոհան մատուցանել: Այս է քահանայ որ մատոյց զպիղծ պատարագն և ցա-ծոյց զբարկութիւնն, և շիջոյց զսրտմտութիւնն 'ի ժողովրդենէ իւրմէ:

Եւ 'ի նմին ժամանակի մինչ չքե-նեղութիւնքն շուրջ պատեալ պա-շարեալ կային, մարդք պատերազ-մացն ճակատեալք, վիշտք հանա-պազորդք, հեծութիւնք անդա-դարք, ուրախութիւն բարձեալ, ցնծութիւն օտարացեալ, խաղա-ղութիւն մերժեալ, շինութիւն հա-լածեալ. ոչ Թիկունք, ոչ օգնա-կանք, ոչ պաշտպանութիւնք յու-մեքէ գտանել. գրգանք հեռացեալ, պարծանք անցեալ, բարձրութիւն խոնարհեալ, Թշնամութիւն բազ-մացեալ, մեծութիւն աղքատա-

ցեալ, թագաւորութիւն խափա-նեալ, մահ հասեալ, ստուերք մեր-ձեալ: Օրհասն Ճեպէր, դժոխոցն բերան բացեալ՝ առ հասարակ զա-մենեսեան կենդանեացն կլանել. ի-ջուցեալ զփառաւորս և զպատուա-կանս յապականութիւն. զամպա-րիշտս և զմեղաւորս՝ կորուսանել, ծածկել զմարմինս արդարոց 'ի հող, խորտակել մարդախանձ ժանեօք զոսկերս անօրինացն, արգելուլ 'ի խորս խաւարին անարգարոցն. տանջել անհնարին տանջանօք զնե-ղիչս նեղելոցն. չարչարել անո-ղորմ չարչարանօք զզրկիչս զրկելոցն, արկանել 'ի վիրապս մթապատս զա-մենայն մեղսասակարս. փոխանակ զի ընկղմեցին զՅակոբ ամբարշտու-թեամբ և պղծեցին զԻսրայէլ աղ-տեղութեամբք:

Եւ երբեւ ողորմութիւնն ամփո-փեցաւ, և ստութիւնն զանձն երե-ւեցոյց, բարկութիւնն սփռեցաւ և ցասումնն հեղաւ, Թուրն յագեցաւ, և սուրն արբեցաւ, մեղք յայտնե-ցան և չարիքն մերկանդամ եղեն,

մաւրհակն պատառեցաւ և գիրն ըն-
թերցաւ. յայնժամ սկսաւ ցօղել
ցօղ ողորմութեանց և յորդել անձ-
րեւն գթութեանց, լուաց և ողո-
ղեաց զգիր պարտեաց նոցա, սըր-
բեաց և սպիտակացոյց զներկուածս
չարութեանն, զի մի յերկարեսցէ
պահանջումն դատաստանին, և բաղ-
մանայցէ հատուցումն վրէժխնդրու-
թեան: Յանկարծակի յայտնեցաւ
արեգակն գոլախառն և արձակեաց
զնշոյլս քաղցրահայեաց ճառագայ-
թիցն, հալածեաց զսառնն կռա-
պաշտութեան, և աղաղեաց զջրհե-
ղեղսն ուրացութեան, ցամաքե-
ցոյց զճահիճս ամբարշտութեան, և
սարսատեցոյց զխանաւութիւն պըղ-
ծութեանն. եհար զհոտ ժանտիցն
և եբարձ զշարաւ ճենճերոցն. սըր-
բեաց զերկիրն իւր և ամրացոյց,
լուաց զտեղին և մաքրեաց, և սըփ-
ռեաց զհանդերձս խաղաղութեան,
և ջեռոյց տարածեաց զսատուերս չի-
նութեանն և զգաստացոյց: Մաղն-
չեաց 'ի չար գազանսն և ցրուեցան,
կորիւն առիւծու Յուդա, և շքե-

ղացոյց զփառս ազգին իւրոյ , և բարձր արար զեղջիւր ժողովըրդեանն ։ Ո՛վ քահանայ պատերազմող , եփուղաւոր և զրահաւոր , քաւիչ և առաքինացուցիչ , որբարար և զօրաւոր , հզօր խըրխե զառեւծ , որ արկանէր 'ի վերայ ազգաց բազմաց և բազմէր ուտէր զմարմինս իշխանաց . արբեցաւ սուր յարենէ սպանելոցն , և եԹաց զնետս իւր 'ի վէրս Թշնամեացն . անմի ալար զամբարիշտսն բարկուԹեամբ , ցրուեաց զանօրէնսն ցասմամբ , հալածեաց զամբարտաւանսն երկեւղիւ , կործանեաց զհպարտս դողուԹեամբ . աջողեցաւ 'ի ձեռն նորա փրկուԹիւնն , զայլացոյց զԹագաւորս բազումս , կոտորեաց զհազարաւորս հազարօք 'ի լերինս , և տապաստ արկ զբիւրաւորս բիւրուք ընդ երեսս դաշտին ։ Ուրախ արար զՅակոբ գործովք առաքինուԹեանց , և զուարճացոյց զԻսրայէլ արգեամբքն քաջուԹեանց . հանգոյց զերկիրն քաջանուն փըրկուԹեամբ , և գալարացոյց յաւ-

Ցեւթնեւտասներորդի 2 թագաւորութեանն Պարսից, որ երեսներորդ առաջներորդ Շապհոյ արքայից արքայի, արկին 'ի հարկ զքրիստոնեայս. և 'ի ժամանակին յայնմիկ երանելին Շմաւոն եպիսկոպոս 3 Սղակ քաղաքի և Տիսպոնի, զոր անուանէին որդի Նարօտաներկաց: Բարիոք անուանեցաւ յայս անուն, զի հարքն նորա կերպասս ներկանէին օտար արեամբն 'ի հանդերձ ամպարիշտ թագաւորութեան. և նա ըզգեստ ոգւոց ներկեաց արեամբ մարմնոյ՝ լինել պատմուճան սուրբ արքայութեանն: Շմաւոնս այս զանձն 'ի մահ եդ վասն օրինացն Աստուծոյ և փրկութեան ժողովրդեանն. իբրեւ ետես թէ ոչ են իրքն արժանաւորք որ գործին յեկեղեցւոջ Աստուծոյ, մատնեաց զանձն 'ի մահ, ըստ օրինակին Յուդայ մակաբայեցի 'ի ժամանակի նեղութեան ժողովրդեանն: Ո՛վ քահանայք երկոքեան քաջանունք. անդ Յուդա առաքինի և աստ Շմաւոն նահատակ. մին 'ի պատերազմի քաջացաւ և

փրկեաց զժողովուրդն, և միւսն 'ի մահու նահատակեցաւ և փրկեաց զժողովուրդն. մին յաղթեաց և փառաւորեցաւ, և միւսն պատերազմեցաւ և առաքինացաւ. Ցուցա զայլս կոտորելով արար զիւրութիւն ժողովրդեանն, և Շմաւոն 'ի ձեռաց այլոց մեռանելով արար զազատութիւն ժողովրդեանն: Սոքա են քահանայապետք զգեցեալ զկատարեալ հանդերձ քահանայութեան, պաշտօնեայք սեղանոյն սրբութեն, փառաւորիչք պաշտամանն շքեղութեամբ, մկրտիչք ջրով արդարութեամբ, զգեցեալք զզէն սպառազինութեան, որ քաջալերս տային և 'ի մահ աներկիւղ կոչէին, խրախոյս բանային և 'ի սպանումն առանց զանգիտելոյ հրաւիրէին. որ ընդ առաջ սրոյ ընթացուցանէին առնաբար, և զտէգս նիզակաց առ ոչինչ համարեալ յօժարեցուցանէին. մկրտել յարիւն յորդորէին և ըմպել զբաժակն ստիպէին. պարգեւս բաշխէին, պսակս շնորհէին, զիրս տեառն կատարէին զգուշու-

թեամբ , զօրէնս Աստուծոյ պա-
հէին սրբութեամբ ։ Զի մին ուղիղ
օրինակաւ կատարեաց զգործն , զի-
անձն ընդ անձին սպան , և ինքն
սպան և փրկեաց . և միւսն խոնար-
հութեամբ վարեցաւ , զի փոխանակ
զծնօտն մատուցանելոյ՝ մատոյց ըզ-
պարանոցն . մին մինչ զայլսն պահան-
ջէր ինքն պահանջեցաւ , և միւսն
օրինակ խոնարհութեանն խոնար-
հեցաւ . մին քահանայութեամբ ըզ-
մեռեալս իջեալս 'ի հող քաւէր , և
միւսն քահանայութեամբ զմեռեալս
'ի մեղաց կենդանացուցանէր . մին
ել ընդդէմ պատերազմաւ , սպան և
սպանաւ , և միւսն ընդդէմ ծածուկ
պատերազմի՝ սպանաւ ։ Ո՛վ սպա-
նումն սրբոց , որչափ մեծ իցես .
մանաւանդ զի և Փրկիչն քեւ տա-
ղայանի յաղթութիւնն 'ի ծածուկ
անօրէնութենէն ։ Յուդա զօրացաւ
յԻսրայէլ և յԱստուած ոգւոց , և
թափեաց զհարկ ժողովրդեանն 'ի
ձեռաց Թագաւորին Յունաց և Ա-
սորւոց . և Շմաւոն առաքինեցաւ
Յիսուսիւ Որդւովն Աստուծոյ , և

Թափելոց զհարկս ժողովրդեանն 'ի հրամանէ Թագաւորին Ասորւոց. 5 : Սոքա են հովիւք քաջք և առաջնորդք իմաստունք, որ ետուն զանձինս 'ի մահ փոխանակ խաշանցն մատնելոյ. չարչարեցան նոքա զի ապրեսցին խաշինքն 'ի չարչարանաց անօրինացն. ոչ ետուն նոցա ճանաչել զճարակս կոխելոյ և ոչ ըմպել զջուրս պղտորս և սմբակահամս :

Գ. Շմաւոն եպիսկոպոս առաքինի զօրացաւ 'ի տէր և քաջալերեցաւ յանուն Աստուծոյ, և առաքեաց պատգամ առ արքայ և ասէ. Յիսուս փրկեաց զեկեղեցի արեամբն իւրով և ազատեաց զժողովուրդ իւր, զմահ ճաշակելով հանգոյց զաշխատեալս. և որք ունէին զբեռինս ծանունս, իւրովք չարչարանօքն եբարձ զլուծ հարկաց խաչիւն իւրով. խոստացաւ մեզ ըզպարգեւսն յաշխարհին՝ որոյ տէրութիւնն կայ և մնայ յաւիտեան. Յիսուս արքայ է արքայից : Այլ զհարկդ զոր եդիք՝ մեք յանձն

ոչ առնումք. քա՛ւ լիցի՝ որ եմք ա-
զատք 'ի բնէ՝ մտանել 'ի ծառայու-
թիւն մարդկան. տէր մեր տէր է
ազատութեանդ ձերում, և վասն այ-
սորիկ զծառայակից ազատութիւնն
մեք ոչինչ ունիմք յանձին: Աս-
տուած մեր արարիչ է աստուածոցդ
ձերոց. և մեք՝ իբրև զձեզ արարա-
ծոց ոչ պագանեմք երկիր անմտու-
թեամբ. և նա պատուիրեաց մի
ստանայք ոսկի և մի այլ ինչ 'ի քը-
սակս ձեր, ոչ արծաթ հարկեալ
զոր հարկսդ արկէք. և առաքեալն
նորին զգուշացոյց, եթէ Ծանր
գնոյ գնեցայք, մի լիցէ թէ լինիցիք
ծառայք մարդկան:

Իբրև լուաւ զայս պատգամ ար-
քայն՝ լի եղեւ բարկութեամբ մե-
ծաւ, և անհնարին ցասմամբ խռո-
վեալ խօսեցաւ. և այսպէս յղեաց
առ երանելին, թէ Ընդէ՞ր յանդուգն
յամառութեամբդ զկեանս քո և
զաշակերտացդ կամիս կարճել և 'ի
միասին միանգամայն իջանել 'ի դը-
ժոխս հրաւիրես առ հպարտու-
թեան, և ամբարտաւանութեամբ

ամբարտաւանեցուցանել ջանաս յի-
նէն զժողովուրդդ։ Արդ և ես դը-
ւից հնարս ինչ ստանալ զքեզ յեր-
կրէ և անմարդի առնել 'ի մարդկա-
նէ։ Իսկ Նահատակն մեծազօր ըս-
կըսաւ տալ բանիցն պատասխանի,
Թէ Յիսուս մեռաւ փոխանակ ամե-
նայն երկրի և ազատեաց, և ես մե-
ռանիմ փոխանակ ամենայն ժողո-
վըրդեանս որում հովուեմս. այլ
իմովք կամօք զայն ոչ առնում
յանձն, եթէ ոք քեզ 'ի հարկս
մատնէ. զի՞ պիտոյ են ինձ այն
կեանք, եթէ մեղօք հասանէ ինձ
կեալ. զի ազատքն տեառն իմոյ 'ի
նեղութիւնս անկանիցեն, և ես 'ի
հանգիստ և 'ի պատիւ. քաւ լիցի
ինձ խնայել 'ի կեանս իմ վասն կե-
նաց փրկելոցն որ փրկեցան ա-
րեամբն Աստուծոյ. և վասն ողոր-
մելոցն որ գտին զողորմութիւն փըր-
կութեամբն Քրիստոսի, առնել ինձ
դիւրութիւն և այլոց նեղութիւն.
ոչ սիրեմ ես զիս քան զՔրիստոս,
և ոչ խնայեմ յոտս իմ երթալ զնոյն
ճանապարհ 'ի մահ. և ոչ արգե-

լուծ զանձն իմ 'ի սպանմանէն՝ որով սպանաւ ճշմարիտ քահանայապետն. այլ զարիւնս պատրաստ եմ տալ փոխանակ հօտին, և զպարանոցս սրոյ փոխանակ խաչին. չէ ինչ նման իմ փոքր մահս՝ մեծի մահուան տեառն որ մեռաւ վասն նոցա։ Եւ զոր ասացերն եթէ վասն քո զամենայն ուսմնակիցսդ կոտորեմ, այն ոչ լինէին ինչ է այլ 'ի քէն, և 'ի քումմէ գլխոյդ խնդրեսցի, և ես և ժողովուրդ իմ անպարտ եմք յարենէ։ Կան աւասիկ և նոքա և ըստ իւրաքանչիւր անձանց պատրաստ են տալ պատասխանի. և յորժամ քննես՝ առնուս զփորձ հանդիսի զամենեցունց։

Դ. Յայնժամ առիւծն զազանացեալ և ապականիչ մարդախանձ արիւնարբու ծանրագին արեան մարդկան, ցասումն անհնարին նիւթեաց 'ի սրտին, և զգեցաւ իբրեւ զզէն զամենայն մարմնովն. սրել սկսաւ զժանիսն և կրճտել զատամունսն, յօժարեալ 'ի սպանանել և

յարձակեալ 'ի բեկանել ։ Վասնզի ցանկացեալ փափագէր ըմպել զարեան արդար, և ուտել անյագ ըզմարմինս անպարտից ․ գոչէր մեծաձայն բարբառով և գոռացուցանէր առ հասարակ զամենայն ափեզերս ահեղ պատգամօքն և սաստիկ սպառնալեօքն ։ Հրաման տայր վասն քահանայից և պաշտօնէից, որ վաղվաղակի զմահ սրոյ ընդունիցին ․ եկեղեցիք աւերեսցին և սրբութիւնք պղծեսցին, տաճարք պաշտամանն մատնեսցին յաւար, և ամենայն կարգ սուրբ Աստուծոյ եղծեալ ապականեսցի ։ Եւ զՂմաւոն գլուխ կարգաց, ասէ, վաղ առ իս հասուսցէք, որ զմեր թագաւորութեանս խոտեաց և զկայսերն ընտրեաց, որ նորա Աստուծոյն երկիրպագանէ և զմեր աստուածս առ ոչինչ համարի ։ Եւ Հրեայք եւս թշնամիք որպէս սովոր էին սկսան չարախօսել զՂմաւոնէ և զամենայն քրիստոնէից ․ քանզի սովոր էին յայսպիսում ժամանակի դառնել չարախօսք, սկըսան ամբաստան լինել և ասել ․

Յորժամ դու արքայ, հրովարտակս և պատգամս մեծաւ շքով և պատրաստութեամբ առաքես կայսեր. առ ոչինչ համարի. իսկ Շմաւոն եթէ գոյզն բանս առնէ 'ի Թղթի և առաքէ, յոտն յառնէ և երկիրպագանէ, և երկու խուրովք ձեռօքն առնու զԹուղթն և կատարէ զիրան վաղվաղակի: Քանզի նմանեալ սուտ վկայքն Շմաւոնի՝ անօրէն վկայիցն որ վկայեցին զտեառնէ անօրէնութեամբ, և սպանին զտէրն և խոտեցան և ցրուեցան ընդ ամենայն երկիր ըստ անօրէն գործոց և գնացեց. չարախօսեցին զՇմաւոնէ և անարգեցան, և ել ընդ կառափն նոցա չարախօսութիւնն, բազում հազարօքն որ անկան յանկարծակի 'ի սուր 'ի ժամանակի իբրեւ գնացեալ երթային 'ի համբաւ չինուածոյն Երուսաղեմի ըստ բանից առն միոյ որ խաբեաց զնոսա:

Կապեցին զՇմաւոն եպիսկոպոս շղթայիւք և առին գնացին 'ի Սաղակայ տանել 'ի Խուժաստան՝ հանդերձ երկու ծերովք որ էին երի-

ցունք եկեղեցւոյն իւրոյ երկոտա_
սանից . անուն միումն Աքիհեքզա ,
և միւսումն Անանիա . և իբրև
ելին 'ի քաղաքէն , առին գնացին
պահապանքն ընդ հրապարակս եկե_
ղեցւոյն՝ զոր մեծաւ զարդուք զար_
դարեալ էր ։ Աղաչել սկսաւ զպա_
հակսն զի մի՛ տանիցեն ընդ այն .
քանզի յառաջ քան զսակաւ ինչ
աւուրս աւերեալ էր մոգուցն և
հրէիցն . քանզի ածէր զմտաւ թէ
մի տեսից զաւեր տաճարին և խռո_
վեսցի սիրտն և բեկանիցի ։ Առին գը_
նացին զնա տաղնապաւ զերկայն
ճանապարհն սակաւ աւուրս , և
մտին 'ի քաղաք մի որ կոչէր . . . .
քաղաքս ։ Անդ չոգաւ մոգ մի եկաց
առաջի արքային և ասէ . Ածին ըզ-
գլուխ կախարդաց . և հրաման ետ
ածել առաջի . և իբրև եմուտ ոչ
եպագ երկիր . և ընդ այն եւս առա_
ւել ցասեաւ արքայ և ասէ . Արդ
գիտեմ եթէ ստոյգ է ամենայն ինչ
զոր լուայ զքէն . զիա՞րդ էր զի յառաջ
իբրև գայիր երկիրպագանէիր , և
այժմ ոչ պագեր ։ Ասէ Շմաւոն . Յա_

ռաջ պագանէի երկիր, քանզի ոչ
շղթայիւք մտանէի առաջի, և ոչ
թողուլ զճշմարիտն Աստուած կո-
չէիր՝ որպէս և այսօր: Սկսան մոգ-
քըն ասել և անտի չարախօսել և
ատել. Եթէ վասն այդորիկ ոչ առ-
յանձն հարկս տալ, զի 'ի ձէնջ դի-
ցապաշտից ապստամբել կամի. արդ
չէ օրէն եթէ կեցցէ: Ասէ Շմաւոն.
Այն չիցէ շատ, ով պիղծք, զի դուք
կորեայք և զայսպիսի թագաւո-
րութիւն կորուսէք յԱստուծոյ,
այլ և զմեզ եւս կամիք ձերում ա-
նօրէն ամպարշտութեանդ հարկա-
տու առնել: Ասէ արքայ. Սո այ-
ժըմ զհարկացն զլոյց 'ի բաց թող,
և զոր ինչ ես քեզ խրատ տամ՝ զայն
արա վաղվաղակի. երկիր պագ
այսօր ընդ իս արեգական աստուա-
ծոց, և կեաս դու և ամենայն ժողո-
վուրդ քո: Պատասխանի ետ սուրբն
Շմաւոն և ասէ. Թէ ես քեզ՝ որ մեծ
էիր քան զարեգակն և ունիս շունչ
և իմաստութիւն՝ ոչ պագի երկիր,
արեգական զիարդ պագանեմ եր-
կիր որ անշունչ և անմռունչ է և ոչ

գիտէ պատուել զքեզ՝ որ պաշտեսն
զնա՝ առաւել քան զնս որ Թշնամա-
նեմն զնա ։ Եւ զի ասացեր Թէ վասն
քո կեայ ժողովուրդդ , իմ տէր և
ժողովրդեանն՝ Քրիստոս է որ 'ի
խաչ ել , և ես ծառայ նորա այր
փոքր և անարգ . մեռանիմ վասն իմ
և վասն նորա , և վասն ժողովրդեանս
ոչ Թուլանամ . ոչ իջանել յանար-
գանս , այլ ելանել 'ի պատիւ փու-
Թացեալ եմ . ոչ պատրիմ իբրեւ
զմանուկ , այլ իբրեւ զայր կատա-
րեալ արժանաւոր արդեամբք ըզ-
գործն ցուցանեմ . ոչ անսամ մխա-
ռակար խրատուդ , զի ես քաջ խմա-
նամ քան զքեզ ։ Ասէ արքայ . Ե-
Թէ 'ի կենդանի Աստուած խոստո-
վանեիր՝ գոյ քեզ տալ պատասխա-
նի . Թող Թէ 'ի խաչելեալն Աս-
տուած խոստովանիս և հաւատաս
որպէս ասեսդ . անսա ինձ արդ և
պագ երկիր արեգական , որոյ կեն-
դանի ճառագայթիւքն կեան ամե-
նայն արարածք , և գտանես պա-
տիւս և պարգեւս մեծամեծս 'ի
մէնջ , և ճոխ և իշխանս արարից ըզ-

քեզ ամենայն թագաւորութեանս իմում: Շմաւոն ասէ. Եթէ Յիսուս տէրն արեգական և արարիչն ամենայնի իբրև չարչարեցաւ 'ի ձեռաց թշնամեացն, արեգակն քանզի նորա արարած է՝ եմուտ 'ի սուգ և 'ի չարչարանս, իբրև զծառայ 'ի վըկայ տեառն իւրոյ. և յետ երից աւուր յարեաւ 'ի մեռելոց և վերացաւ փառօք յերկինս և նստաւ ընդ աջմէ Հօր: Եւ վասն պարգևուացն և պատուոյ որով կամեցար պատուել զիս, և վասն իշխանութեան և մեծութեան զոր խոստացար ինձ, առացից. ահա պատիւ և մեծութիւն առաւել քան զքոյդ պատրաստեալ կայ ինձ առաջի և պարգևեք և բարի. զորոյ և ոչ զլուրն անգամ լուեալ է քո, որ հանդերձեալ և համբարեալ է ինձ 'ի Ճանապարհին յոր երթամ: Արքայ ասէ. Ոչ է այդ իմաստութիւն կալ 'ի միտս յամառութեան, կատարել զկամսդ, և կորուսցին բազումք. խնայեա 'ի քո մահն և 'ի հազարաց անձինս՝ զոր կորուսանելոց եմ վասն քո.

տրգել զիս 'ի քս արենեգ և յարենե
բիւրուցդ՝ զոր եդեալ եմ 'ի մտի սա-
տանկել: Շմաւոն ասէ. Եթէ արիւն
արդար եղեալ ես 'ի մտի հեղուլ
որպէս ասացեր, դու գիտես, և դու
տալոց ես զվրէժ արեանցն, յոր-
ժամ տայցես տուկոսիս վասն ամե-
նայնի զոր գործելոց իցես: Եւ զայս
գիտեմ զի եթէ նոքա մահու թա-
գաւորեն, և դու նոցա մահու մե-
ռանիցիս. բայց ես զիմ կեանս որ
Քրիստոս է՝ ընդ նոցա մահուն ոչ
կարեմ փոխանակել. և 'ի վերայ
այսր կենաց որ յաշխարհի աստ
կեամ՝ իշխանութիւն ունիս, բարձ
յինէն զսոսա վաղվաղակի սրով և
կամիս մահուամբ: Արքայ ասէ. Ե-
թէ դու առ հպարտութեանդ՝ զոր
ամենեցունցդ յայտ առնել կամիս՝
ոչ խնայեսցես յոգիսդ, սակայն ես
զուխտակիցս քո զարհուրեցուցա-
նեմ դառն մահու զոր ածեմ 'ի վե-
րայ քո, և առնեն զկամս իմ 'ի հար-
կէ և ապրին: Շմաւոն ասէ. Այդ մի
լիցին թէ առ քեզ կեցցեն և յԱս-
տուծոյ մեռանիցին. բայց դու տես

զինոցս հանդէսն սայրասուր սրոյն , և անդ տեսանիցես զազնուական կամս նոցա , զի առաւել բուռն և սաստիկ են քան զքո կամսդ չարութեան . քանզի իւրաքանչիւր ոք 'ի նոցանէ զճշմարտութիւնն զիւրեանց անձանց հաստատուն ունին և չեն ինչ սասանելոց ։ Եւ զայս գիտասջիր արքայ , զի ընդ քո անուանեալ և ընդ անցաւոր թագաւորիդ՝ զմեծ անունն որ կայ 'ի վերայ մեր՝ ոչ կարեմք փոխանակել , այս ինքն է Յիսուսի Քրիստոսի տեառն մերոյ ։ Արքայ ասէ . Եղծանեմ ապականեմ զգեղ ցանկալի և յարիւն յապաժոյժ թաթաւեմ զհասակդ գեղեցիկ հուպ ընդ հուպ կարճ 'ի կարճոյ վաղվաղեան ժամանակի , եթէ ոչ արասցես ինձ պատիւ առաջի իշխանացս իմոց պատուականաց և պագանիցես երկիր ինձ և արեգական աստուծոյն արեւելից ։ Շմաւոն ասէ . Ո՞ւր է զի աստուած է արեգակն , զի ահա քեզ որ մարդդ ես և նմա՝ հասարակ ետուր ղերկրպագութիւն . և զայս գիտասջիր եթէ դու մեծ ես քան

զնա եթէ կամէիր իմանալ. և զի աստացեր եթէ զգեղ ցանկալի ապականեմ, զո՝յ մեր կենարար որ նորոգէ միւսանգամ մեծասքանչ փառօք զմեզ 'ի մեռելոց, որ յոչնչէ 'ի չըգոյէն արար զմեզ և հաստատեաց:

Ե. Յայնժամ հրաման ետ արքայ կապել զՇմաւոն մինչեւ ցառաւօտն. զի այսպէս իմացաւ եթէ 'ի միտս ինչ ուսանիցի վաղիւն որ առնիցէ զհրամանս նորա: Եւ մինչդեռ ձգէին հանէին զնա արտաքոյ քան զհրապարակն արքունի, նստէր անդ ներքինին մի մեծ դայեակ որդւոյ արքայի. որոյ անուն աստիճանին յորում կայր կոչէր Արղբէդ 5, պատուական և մեծարու էր առաջի թագաւորութեանն, անուն Գուշթազդ որ թարգմանեալ կոչի արքայազատ. քրիստոնեայ լեալ էր և 'ի հալածանս նեղեալ բանի արեգական երկիր պագանել. և իբրեւ ետես նա զՇմաւոն յոտն եկաց և երկիր եպագ. նա ոչ ինչ հայեցաւ ընդ նա, այլ դարձոյց 'ի նմանէ զե-

րեսս իբրեւ ցասմամբ ։ Եւ սկսաւ զղջանալ յոգւոց հանել լալ և ասել ․ Զի թէ Շմաւոն որ սիրելի և բարեկամ էր իմ այնչափ ցասուցեալ է ինձ , իսկ Աստուած որում ստեցին՝ ո՞րչափ ինչ բարկացեալ իցէ ։ Ցարեաւ վաղվաղակի և գնաց 'ի տուն , և մերկացաւ զզգեստսն ազնիւս և զգեցաւ թուխ հանդերձ սգոյ ․ և եկն նստաւ անդէն 'ի տեղւոջն ուր նստէրն ․ իսկ որ եղանէին և մտանէին՝ զարմանային ընդ օտարոտի իրսն զոր տեսանէին ։ Հասին իրքն յարքայ ․ յղեաց առ նա պատգամ և ասէ ․ Զի՞նչ է այդ փոփոխելութիւնդ , որ ես կենդանի եմ և թագ 'ի գլուխս հաստատուն կայ , և դու սուգ առեալ և 'ի խոր խոցեալ նըստիս ․ կին և որդիք քո չի՞ք թէ մեռան , և վասն այնր ունիցիս սուգ յանձին ։ Նա պատասխանի ետ և ասէ ․ Մահապարտ եմ , հրաման տուր սպանանել զիս ։ Արքայ իբրեւ լուաւ զբանն զարմացաւ , և ետ վաղվաղակի ածել զառաջեաւ զի 'ի նորուն բերանոյ լուիցէ զի՞նչ են

պատճառք իրացն ։ Իբրեւ տարան 'ի ներքս ասէ արքայ. Դո՞ւ հարաւ 'ի քեզ, զի զայդ եւս առնես թագաւորութեանս իմոյ ։ Գողթացդ ասէ. Դուք չէք յիս, այլ իմաստութեամբ եւ հանճարով ծերոյ վառեալ եմ ։ Ասէ արքայ. Եւ ըզթուխդ էր զգեցեալ եւ իբրեւ ըզդիւահար, եւ առ իս յղէիր թէ մահապարտ եմ ։ Գողթացդ ասէ. Վասն այդորիկ արարի զայս, զի ոչ առ Աստուած արդար դատայ եւ ոչ առ քեզ. Աստուծոյ սանեցի եւ թողի զճշմարտութիւն նորա, եւ զքո կամսդ կատարեցի եւ զքեզ խաբեցի. զի 'ի վերին երեսս պագի երկիր արեգական եւ ոչ սրտի մտօք ։ Իբրեւ լուաւ արքայ զբանն՝ լի եղեւ ցամամբ եւ ասէ. Այդ ամենայն սուտ, ով ծեր անմիտ, վասն այնց բանից էր. արդ ես արարից քեզ սուգ եւ լալիս վաղվաղակի, եթէ 'ի նոյն միտս ամպարշտութեան հաստատեալ կացցես ։ Գողթացդ ասէ. Երդուայ եւ հաստատեցի յԱստուած որ արար զերկին եւ զերկիր, թէ աւելի

քան զայն որչափ արարի զկամս քո՝ այլ եւս ոչ եմ ինչ առնելոց. զի քրիստոնեայ եմ ես և զճշմարիտն Աստուած՝ ընդ քեզ որ մարդ ես խաբեալ՝ ոչ կարեմ փոխանակել: Արքայ ասէ. Զծերութիւնդ և ըզվաստակսդ որ արդարութեամբ վաստակեցեր հօրն իմում և ինձ խորհիմ, և վասն այնորիկ ներելով յօժարեցուցանեմ, զի մի կացցես 'ի նոյն միտս կախարդացն, և կորիցես ըստ նոցուն օրինակի 'ի կենդանեաց: Գուշթազդ ասէ. Թէ հաւատաս արքայ և ստոյգ լինիցի քեզ, զի ոչ դու և ոչ իշխանքդ որ նըստին առաջի քո՝ այլ ոչ եւս կարեն զբարի խորհուրդսն որ անկան 'ի միտս իմ՝ շըջել, եթէ թողից զարարիչն իմ և արարածոյ երկիր պագից: Արքայ ասէ. Ա՜յ մահապարտ, և արարած կոչես զարեգակն, և մեք արարածոյ ստիպեմք զքեզ երկրպագանել: Գուշթազդ ասէ. Երանի՜ թէ կենդանի և շնչաւոր ինչ արարածոց տայիր երկրպագանել, և ոչ անշունչ և անմռունչ արարա-

ծոյ՝ որ հաստատեալ են 'ի սպաս
պաշտաման մարդկան ։ Յայնժամ
հրաման ետ արքայ հատանել զ-
գլուխն . և մինչդեռ ընթացուցա-
նէին 'ի տեղին ուր զորոգայթն մա-
հու կազմեալ էր , ասէ . Կացէք
վայր մի , բանս ինչ ունիմ յղել առ
արքայ ։ Զտեղի առին , քանզի կար-
ծիս ինչ կարծեցին սնոտի վասն նո-
րա . կոչեաց զներքինիսն , յղեաց
առ արքայ և ասէ . Արքայ ինքնին
գիտէ զի միամիտ և հաւատարիմ
լեալ եմ յամենայն խորհուրդս ձեր ,
և արդարութեամբ և ստուգու-
թեամբ գնացեալ եմ ընդ քեզ և
ընդ հօր քում , որպէս դու իսկ վը-
կայեցեր . արդ զայս ինչ զոր խըն-
դրեմ 'ի քէն արա . հրամայեսցես
հրապարակօք քարոզ կարդալ թէ
Գոշթազդ ոչ եթէ զխորհուրդ ինչ
արքունի 'ի վեր եհան , և ոչ թէ
վասն այլ ինչ յանցանաց մեռանի ,
այլ վասն քրիստոնէութեան , զի ոչ
ուրացաւ յԱստուծոյն իւրմէ ։ Քան-
զի խորհեցաւ խորհուրդ քաջ առա-
քինին , թէ զինէն համբաւ ելեալ

է թէ Գողթազգ ուրացաւ, և գիտեմ եթէ բազումք գայթակղին վասն իմ. և արդ եթէ այսպէս մեռանիմ լուռ, ոչ ոք գիտէ եթէ վասն էր մեռանիմ. այլ հնարեցայց զի գիտասցեն և քաջալերեսցին. և զայս օգուտ թողից յետ իմ, և լուիցեն ամենայն քրիստոնեայք թէ վասն Քրիստոսի մեռանիմ և զօրասցին: Այս խորհուրդ բարի և ազնուական յիմաստուն ծերոյն յօգուտ հասարակաց շնորհեցաւ. այս փոխ պատրաստութեան 'ի վարժ և 'ի հմուտ նահատակէն՝ 'ի շահ եկեղեցւոյ բարբառեցաւ. զի լուիցեն և եղիցին պատրաստականք ամենայն նահատակք արութեամբ 'ի պատերազմ: Հրաման ետ արքայ ելանել կարգաւ քարոզ, որպէս և տասացն Գողթազգ. Մանաւանդ ասէ, յորժամ լսեն բազումք զանգիտեն 'ի մահուանէ և թուլանան 'ի մտաց յորում հաստատեալ կան: Եւ զայն ոչ իմացաւ անմիտն, թէ նա աղի ձայն արար խաչինն զի գուոյթտայցեն և գրգռեսցին զկնի սպանո-

նելոյն, որ արկ զքաղցր բարբառն և հրաւիրեաց յաղն ճշմարիտ: Սպանաւ ծերն պատուական քաջ անուամբ վասն Յիսուսի, յերեքտասաներորդումն յարեգ ամսեան 'ի հինգշաբաթւոջ մեծի շաբաթուն 'ի զատկի աղհացս:

Զ. Ո՛վ Ղմաւոն որսորդ, որ որսացաւ զաստուածայինն որսն 'ի մահուն խաչում և 'ի կեանս: Յայնժամ տուան աւետիք Ղմաւոնի 'ի բանդն վասն իրացն որ եղեն. զարմացաւ և ուրախ եղեւ և սկսաւ ասել. Մեծ է սէր քո Քրիստոս. կարեւոր է գութ քո Աստուած մեր, փառաւորեալ է զօրութիւն քո Յիսուս, և առաւելեալ է իշխանութիւն քո փրկիչ մեր. զի ըզմեռեալս կեցուցանես, զմեղաւորս արդարացուցանես, և զանյոյս 'ի յոյս ածես. զի զնա որ յետինն համարիւր՝ առաջին արարեր ըստ կամաց իմոց. ստարն ընտանի եղեւ, հեռացեալն 'ի ճշմարտութենէն եղեւ մերձաւոր հաւատոցս, եղեալն

'ի խաւարին՝ եղեւ արժանի բազմականի հարսանեացն. ընկեցեալն իրովք արտաքս՝ եկն եմուտ 'ի ներքս խոստովանութեամբ: Ես ասէի թէ ես կանխեցից, և զայն ոչ գիտէի թէ նա յառաջէ քան զիս. ես ասէի թէ ես վաղվաղ հասից, և զայն ոչ ածէի զմտաւ թէ անցցէ ընդ իս. խրամատեաց զահագին պարիսպն մահու և ուրախ արար զիս. երեւեցաւ նովաւ ճանապարհն կենաց և ցնծացայ, եղեւ առաջնորդ ոտից իմոց ընդ նեղ ճանապարհն, և ուղղեաց եհան զոտս ընդ նուրբ շաւիղն: Արդ զի՞ կայցեմ կամ ո՞ւմ անսայցեմ. թարթառ արար վազվաղակի թէ արի կաց. ազդ ետ, թէ արի եկ հասիր՝ քեզ մնամ. ոչ ամաչեն միւսանգամ երեւալ իմ 'ի քէն. եկ մուտ ուրախութեամբ 'ի տունս զոր կազմեցի, և 'ի հանգիստս զոր պատրաստեցի, և ուրախ լիցուք 'ի միասին, որպէս լինէաք ուրախ յանցաւորիս՝ նոյնպէս և 'ի յաւիտենականս: Արդ յինէն է արգել, և ես զեղծիմ թէ յամեմ: Ե՞րբ իցէ զի տե-

սից զժամն յորժամ գայցեն համանիցեն և տանիցեն առ մահ տագնապաւ, զի երթայց դադարեցից 'ի վշտացս և 'ի փորձութեանցս՝ որ շուրջ պատեալ պաշարեալ են զմեւք:

Յարեաւ եկաց յաղօթս և ասէր այսպէս. Տուր ինձ ասէր զպսակս զայս, դու ինքնին գիտես զի ես ինձէն խնդրեցի, զի ամենայն մտօք և ոգւով և կենօք սիրեցի զքեզ, զի տեսից զքեզ և ուրախ եղէց և հանգեայց. և այլ մի ևս կեցից յաշխարհիս, և տեսանիցեմ զչարչարանս ժողովրդեանս և զաւեր եկեղեցեաց քոց, զկործանումն սեղանոյն, զնեղութիւն սուրբ ուխտին, զվհատութիւն վհատելոցն, զզանգիտանս դարձելոցն 'ի Ճշմարտութենէն, և զայլոց բազմաց որ վերին երեսօք սիրէին զիս, և իբրև հալածանքն եղեն՝ եղեն ատելիք և թշնամիք, մանաւանդ խաչահանուանքն այպանողք որ մեծաբանեն 'ի վերայ ժողովրդեանս մերոյ: Այլ ես որ կոչեցայս 'ի սմին՝ հաստատուն կացից, և յոր հրաւիրեցայս՝ զնոյն և

կատարեցից արդեամբք ։ և եղէց օրինակ ամենայն ժողովրդեան քում որ են յարեւելս ։ Ես 'ի վերոյ բազմէի, և նախ պարտիմ մեռանել, տաց զանձն իմ 'ի սպանդ առաջի նոցա և առից ընդ նոսա զկեանս իմ ուր ոչ հոգք է և ոչ ծուփք, ոչ տրտմութիւնք, և ոչ յոյզք խորհրդոց ։ ոչ որ նեղէ և ոչ որ նեղի, ոչ որ զրկէ և ոչ զրկի, ոչ որ խստացուցանէ և ոչ որ խստանայ, ոչ սպառնալիք և ոչ պատուհասք թագաւորաց, ոչ որ կոչէ և երկեցուցանէ, և ոչ որ տագնապէ և վարհուրեցուցանէ ։ Լուծութիւն սրտիս քեւ զօրասցի, Ճանապարհդ ամենայնի ։ վաստակ անդամոցս քեւ հանգիցէ, օծեալդ ։ Իւղ մեր ուրախարար, վիշտք սրտիս քեւ մոռասցին ։ բաժակ փրկութեան մերոյ, վտակք արտասուաց քեւ արգելցին, մխիթարութիւն ցնծութեան մերոյ ։

Իսկ երկու եւս ծերքն որք էին կապեալք ընդ նմա, զարմանային ընդ աղօթսն և ընդ տարածել ձեռացն ընդ երկինս ։ մանաւանդ իբ-

րեւ տեսանէին Թէ երփն երփն հար-
կանի յերեսաց նորա իբրեւ զվարդի
և զծաղկաց 'ի ժամանակս գարնայ-
նւոյն ։ Եւ 'ի ժամանակի իբրեւ
չորեքտասաներորդ չարչարանաց
Փրկչին մերոյ լուսանայր , ոչ յաղ-
Թեաց նմա քուն իրօք պատիր զբա-
ղանօք , և ոչ հոգք խորհրդոց իրօք
խափանիչ դատարկուԹեամբք • այլ
զայս եւեԹ աղօԹէր , եԹէ Արժա-
նաւորեա զիս տէր յաւուրս քում
և 'ի ժամու չարչարանացն քոց ըն-
կալայց և ես զբաժակն՝ որում ցան-
կացեալն եմ • զի պատմեսցեն տիե-
զերք ազգաց Թէ յաւուր չարչարա-
նաց տեառն սպանաւ • և ուրախ եմ
զի ուսուսցեն հարք որդւոց , Թէ
Շմաւոնի լեալ եղեն աղօԹք , և ըստ
օրինակի Աստուծոյն իւրոյ 'ի չորեք-
տասաներորդում ուրբաԹուն պա-
տարագեցաւ ։

Իսկ իբրեւ եղեն երեք ժամք ա-
ւուրն , հրաման ել վասն նորա
ստիպով և առեալ տանէին տագնա-
պաւ • և իբրեւ եմուտ առաջի ար-
քային ոչ եպագ երկիր • ասէ արքայ •

Ցո՞ր լինչ խորհուրդ ադար, ով ա-
պըստամբ, մինչ առ մեզ բարեկա-
մութեամբ թէ իշխանել 'ի դժոխս
թշնամութեամբ։ Ասէ ցնա սուր-
բըն. Ես 'ի բարի և յօգտակար խոր-
հուրդս ադայ, զի զթշնամութիւն
քո լաւ համարիմ քան զբարեկա-
մութիւնն։ Արքայ ասէ. Մի անգամ
պագ երկիր արեգական և այլ ոչ
ոք ստիպէ զքեզ, և ապրիս յայն-
ցանէ որք խնդրեն սպանանել ըզ-
քեզ։ Ասէ Շմաւոն. Մի արասցէ
Աստուած եթէ ելցէ այդ համբաւ
ընդ տիեզերս և պատմեսցի ընդ աշ-
խարհս ամենայն, և մի ուրախ լիցին
թշնամիքն արդարութեան և մի ցըն-
ծասցեն ատելիքն մեր տարապար-
տուց և ասիցեն, թէ Շմաւոն մոլո-
րեցաւ յԱստուծոյ և եպագ երկիր
ոչնչի վասն ահի սպանման։ Արքայ
ասէ. Գիտասջիր Շմաւոն զի սի-
րեմ զքեզ, վասն այնորիկ կամեցայ
· երկայնամիտ լինել և տալ խրատ, և
ոչ կամեցար լսել, արդ դու գիտես։
Շմաւոն ասէ. Աւելի օտարոտի հա-
մարիմ զայդ ամենայն բանս ար-

քայի․ այլ արձակեա զիս վաղվաղակի զի ժամ է ճաշոյ, և փութա տառապել․ զի սեղան կազմեալ է ինձ և պսակ յօրինեալ։ Եւ մինչ կայր 'ի միջի ցանկալի տեսլեամբք և գեղեցիկ կերպարանօք, ասէ արքայ ցԹագաւորան և ցիշխանսն որ նըստէին առաջի․ Բազում ազգս այլազգիս տեսեալ է իմ և բազում երկիր կոխեալ ասա 'ի մերում աշխարհիս, այդպիսի դեղ ազնիւ և հասակ գեղեցիկ իբր զայդ չիք իմ տեսեալ․ և տեսէք զիա՞րդ ոչ խնայեաց յանձնըդ՝ վասն տարապարտ սպանուԹեանն զոր ունի։ Պատասխանի ետուն ամենեքեան և ասեն․ Արքայ քաջ, մի հայիր ընդ գեղ մարմնոյն, այլ որչափ զօգիս մարդկան կորուսանէ և մոլորեցուցանէ յուսմանէս մերմէ։ Յայնժամ եւ հրաման զի սպանցեն զնա սրով, և ելին իշխանքն սպանանել զնա։

Է․ Անդէն 'ի նմին քաղաքի կային 'ի կապանս հարեւր այր․ կէսքն եպիսկոպոսունք էին այլոց

վայրաց, և կէսքն երիցունք, կէսքն սարկաւագունք, և կէսքն ուխտաւորք. հասին սպանանել զնոսա: Եւ մոգպետ մի հրամանաւ արքայի հարցանել և ասէ. Թէ երկիր պագանէք արեգական՝ կեայք և ապրիք 'ի մահուանէ: Պատասխանի ետուն ամենեքեան մեծաձայն և ասեն. Փոքր համարիմք զմահդ զոր սպանանէք ըստ կշռոյ հաւատոցն զոր ունիմք առ Աստուած. և առ ոչինչ զսպանումնդ ըստ համեմատութեան սիրոյն զոր ունիմք առ Քրիստոս. և չէ բաւական սայրասուր սուսերն հատանել զմեզ 'ի յուսոյ յարութեան կենացն. ոչ արեգական երկիր պագանեմք և ոչ մխասակալ խրատուդ անսամք, արա վաղվաղակի զոր ինչ ունիս հրաման, ով Թըշնամի և ատելի ժողովրդեանս Աստուծոյ: Հրաման ետ զի զամենայն սուրբսն յառաջ սպանցեն քան ըզՇմաւոն, զի Թերեւս յորժամ տեսանիցէ զչարաչարուք մահս նոցա՝ զանգիտիցէ և արասցէ զկամս Թագաւորին: Իբրեւ ածին զնա 'ի փառաւ-

ւորեալ գունդն վկայիցն և սկսան կոտորել, կայր սուրբն Շմաւոն 'ի կողմանէ վկայիցն քաջալերէր զնոսա և ասէր այսպէս. Զօրացարուք եղբարք յԱստուած և մի երկնչիք, զի նորոգումն ձեր ընդ ձեզ թողի. տէր յարուցանէ զձեզ 'ի ժամ փողոյն գոչելոյ, և յարութիւն ձեր ընդ ձեզ ննջեսցէ. որ կենդանացուցանէ զձեզ 'ի գոչել շեփորային, այսինքն 'ի գոչել տեառնադաւուստ փողոյն։ Սպանաւ տէրն և կենդանի է, և դուք սպանանիք և ըստ նմին օրինակի լինելոց էք կենդանիք առ նմա։ Յիշեցէք զբանն զոր ասաց. Մի երկնչիք յայնցանէ որ սպանանեն զմարմին և զոգի ոչ կարեն սպանանել. և որ կորուսանէ զանձն իւր վասն իմ՝ գտցէ զնա 'ի կեանսն յաւիտենից։ Եւ այսու յայտ առնի ճշմարտութիւնն, յորժամ դիցէ ոք զանձն փոխանակ սիրելոյ իւրոյ. և այժմ դուք դի՛ք իբրեւ ըզկենդանիք ճշմարիտս, և առնլոց էք զհատուցումն իբրեւ զբարեկամս։ Հայեցարուք ընդ առաքեալն որ ա_

սէր, թէ Յիշեա զՅիսուս Քրիստոս, որ յարեաւն 'ի մեռելոց. զի թէ մեռանիմք ընդ նմա՝ ընդ նմին և կեցցուք, և եթէ համբերեմք ընդ նմին և թագաւորեմք. և եթէ մեք կենդանիքս 'ի մահ մատնիմք վասն Յիսուսի, նոյնպէս և կեանքն Յիսուսի յայտնի լինիցի 'ի մահկանացու մարմինս մեր: Եւ որպէս այժմ երեւի, մահ 'ի մեզ զօրանայ և կեանք 'ի նոսա. արդ գիտասջիք սիրելիք, զի մահս մեր այս 'ի կեանսն յաւիտենից նորոգելոց է, և կեանքս այս յաւիտենական մահուն մեռանելոց են: Քանզի որ զիւն Աստուած ուրանայ, ինքն լինելոց է չէ. և մեք թէպէտ և առ ժամանակ մի ձգնիմք, այլ ժառանգելոց եմք զառաւել փառսն և զպատիւն մըշտընջենական. և եթէ արտաքին մարդս մեր ապականի, այլ ներքինն եւս քան զեւս նորոգի. և որ յարոյց զտէր մեր Յիսուս 'ի մեռելոց, և զձեզ ընդ նմին յարուսցէ յարքայութեանն իւրում. քանզի մինչ յաշխարհիս եմք՝ բաց ակն եմք 'ի

տեսանէք . այժմ իբրեւ երանելեաց յաշխարհէ՝ ընդ տեսան լինելոց փառօք ։ Ի մէնջ սէր և 'ի Նմանէ հատուցումն . 'ի մէնջ գութ և 'ի Նմանէ պարգեւք . 'ի մէնջ վաստակ և 'ի Նմանէ վարձք . 'ի մէնջ չարչարանք և 'ի Նմանէ Նորոգումն . 'ի մէնջ արիւն և 'ի Նմանէ արքայութիւն , ուր հանգուցանէ և ուրախ առնէ . բազմեցուցանէ և զուարճացուցանէ քաղցրաձայն բարբառովն , Թէ ով ծառայք բարիք և հաւատարիմք մտէք յարքայութիւն տեառն ձերոյ , որ յորդեցէք հասէք 'ի մեծաշահ շահս զքանքարսն . առէք ձեզ տասն քաղաք 'ի ժառանգութիւն ։

Եւ իբրեւ անկան ամենայն տաքինիքն 'ի սուր սուսերին , մատուցեալ Երրորդութեանն զերրորդեաս Թիւն , զմահն Շմաւոնի և զերկուս ծերոցն . արդ 'ի ծերոցն զմին մինչդեռ մերկացուցանէին , դողալ սկսաւ մարմնովն այլ ոչ եԹէ մտօք . այր մի աւագ՝ անուն Պուտակ որոյ աշխարհան իւր Կաոդպեա կոչէր , որ Թարգմանի գլուխ արուեստա-

դիտաց արքունի, այն ինչ ընդ այն աւուրս առեալ էր պատիւ յաղթանուաց, կայր անդ և միտ դնէր. և ասէ ցծերն. Մի երկնչիր Անանիա և մի զանգիտեր, խից վայր մի զաչադ, և այժմ տեսանես զլոյսն Քրիստոս։ Եւ անդէն վաղվաղակի կալան զայրն և ածին առ արքայ, և սկսան չարախօսել վասն բանիցն զոր լուան։ Ասէ ցնա արքայ. Ա՜յ մահապարտ, ո՞չ պատիւ ետու քեզ և գործ արարի, ընդէ՞ր արհամարհեցեր զհրամանն և մնացեր աստէն տեսանել զմահ դատարկացն որ մեռանին։ Ասէ այրն. Ամենայն գործք իմ երրեւ զայն լիցի դատարկութիւն շահաւոր, և կեանք իմ՝ ընդ մահու նոցա փոխանակեսցի. զպատիւն զոր ետուր ինձ ուրանամ, զի ամենեւին լի տրտմութեամբ է. զմահն զոր ետուր նոցա՝ յանձն առնում, զի ամենեւին լի ուրախութեամբ է։ Ասէ արքայ. Եւ արդ մահ խնդրե՞ս փոխանակ պատուիդ զոր առեր, ո՜վ խելայեղ։ Ասէ առաքինին. Ես քրիստոնեայ եմ և յԱստուած նո-

ցա յուսացեալ եմ, և վասն այնորիկ
սիրեցի զմահ նոցա, անարգեմ զպա_
տիւ քո: Իսկ արքայ մեծաւ ցասու_
մամբ հրաման ետ և ասէ. եթէ Ջգա
մի իբրև զայլսն սպանանէք, այլ փո_
խանակ զի անարգեաց զպատիւն զոր
ետու և խօսեցաւ ընդ իս որպէս ընդ
ընկերի, զլեզու դորա ընդ ծոծրակն
հանէք, զի ամենեքեան որ տեսա_
նիցեն զդա՝ զահի հարկանիցին: Եւ
արարին այնպէս որպէս հրաման
ետ. կորեցին զլեզուն անդէն 'ի
նմին ժամու և սպանին զնա: Էր նո_
րա դուստր մի հաւատաւոր, չոգան
չարախօս եղեն զնմանէ թէ քրիս_
տոնեայ է, առաքեցին և ետուն ա_
ծել 'ի դուռն արքունի. սպանաւ և
նա վասն յուսոյն Քրիստոսի:

Ը. Յամի երեսներորդի և եր_
կրորդի Շապհոյ արքայի, յաւուր
յայնմիկ ել հրաման անողորմ. և
մերկացաւ սուրն 'ի կոտորել զամե_
նայն որ ասիցէ թէ քրիստոնեայ
եմ: Աշխատեցան սրինչք սրոյն և
լքան պարտասեցան բազուկք սպա_

նողացն , և Ճշմարտութիւնն ոչ աշխատեցաւ , և ստուգութիւնն ոչ Թուլացաւ . սակայն որպէս խորհեցաւ նա ոչ եղեւ , և որպէս զմտաւն ած՝ ոչ կատարեցաւ . Նմա այսպէս Թուեցաւ Թէ հարեւր արամբքն զոր սպանանիցէ՝ առնիցէ կատարումն արեանն : Մեռան հազարք հազարաց և դեռ սկիզբն էր . զի յուրբաԹէ չորեքտասաներորդին ՚ի վեց ժամէ՝ յորմէ հետէ ել հրամանն , մինչեւ ցմիւս կիւրակէ երկրորդ շաբաԹու պենտակոստէին՝ որ լինին աւուրք տասն՝ ոչ դադարեցաւ սուրն ՚ի գործոյ :

Թ. Ո՛վ պատուական տօն մեր , որ արժանի եղեւ խառնիլ ՚ի տօնն մեծ , ուր ուրախ եղեն ՚ի նմա փեսայք մկրտեալք երկրորդ մկրտուԹեամբ . այսինքն արեամբ պարանոցաց . և այսուհետեւ ոչ երկնչին ՚ի ներկուածոց մեղաց : Նովաւ ցընծան սգաւորք որ մտանէին ՚ի սուգ ՚ի պահս քառասներորդացն , զի երԹեալ վայելեն զանսպառ ժա-

մանաւկա յուսախաբարար բազմականն_
ացն. Նովաւ քահանայք լռեցան
ձայն իւրեանց անձանց, և ոչ եւս
լինէին կարող աղաչաւորութեան ար_
տասուաց. Նովաւ աշխատաւորք և
մառայողք լռեցին, և այլ. ոչ եւս
խռովլին և պղտորին 'ի հողս և 'ի
ծովիս աշխարհիս. Նովաւ աղաղաք
դադարեցին յընչից համարոց և 'ի
տանէ և 'ի կենաց զբօսանաց. Նո_
վաւ աղաւ կանայք ապրեցան 'ի
պէսպէս նկարագործ անօթոց և
ան 'ի վաւարան 6 սաէպ սաէպ
Թօթափելոյ։ Նովաւ ծառայք նըն_
ջեցին և հանգեան, և չիք ոք որ
զարթուցանէ 'ի սպաս և 'ի գործ
տերանց. Նովաւ աղախնայք բուժե_
ցան և մոռացան զահ և զերկեւղ
տիկնաց. Նովաւ Ճգնեալք մխիթա_
րեցան, զի ոչ եւս ածեն զմտաւ ըզ_
ցաւս և զչարչարանս։ Եւ արդ Թէ_
պէտ և մեր մահն յարութեամբ նո_
րոգի, այլ վարձք և հատուցումն
սպանողացն՝ մահ և կորուստ լիցի.
տառապեսցին 'ի չարչարանս, փո_
խանակ զի յանխնայ հեղին զարիւնն

մեր ։ Սուրք անօրինացն որով կոտո_
րեցին՝ մտցեն 'ի սիրտ նոցա, և ա_
ղեղունք նոցա խորտակեսցին 'ի բա_
զուկս իւրեանց ․ ամաչեսցեն և մատ_
նեսցին 'ի պարտութիւն, յորժամ
լիցի յաղթութիւն սպանման մերոյ,
և յարութիւն և նորոգումն մահուց
երանելեացն ։ Մեզ պարծանք և ա_
նուն, և նոցա կորանք և նախա_
տինք ․ մեզ փառք և պատիւ, նոցա
ամօթ և անարգանք ․ զի 'ի Քրիս_
տոս յուսացաք, և 'ի քեզ Յիսուս՝
քաջալերեցաք ։

Գային յամենայն կողմանց 'ի
համբաւ մարտիրոսութեանն, և
փութային ճեպէին առնուլ զպար_
գեւս կենացն, և մատնէին իբրեւ
զգառինս 'ի ձեռս խոհակերաց ։ Եւ
մոգպետք որ գային ուստեք ուս_
տեք՝ շղթայիւք ածէին զքրիստո_
նեայսն 'ի համբաւ կոտորածին որ
էր ընդ աշխարհն ամենայն ․ և որ_
չափ սուրն յագէր, նոքա եւս քան
զեւս քաղցնուին մահուն ․ և այն_
չափ սախպով կոտորէին՝ մինչ ոչ
գիտէին ում լիցէ որ սպանանէինն ․

բայց այնչափ միայն զի հարցանէին վասն էր է մահն : Մինչ զի Ներքինի մի սիրելի արքայի սպանաւ 'ի խըւանն կամօք վասն Քրիստոսի, որոյ անուն էր Ազբդա : Լուաւ արքայ և տրտմեցաւ . ապա հրաման ետ եթէ զամենեսեան որ կամին մեռանել՝ մի՛ սպանանէք, բայց որ վարդապետք են ուսման Նոցա :

Անուանք արանց և կանանց և մանկաւոյ որ կոտորեցան յայնմ կոտորածի, բայց 'ի քաղաքին միայն այլ ուրեք ոչ եղեւ յայս . քանզի բազում էին . և ոչ ոք կարէ ունել զթիւ անուանցն որ ուստեք ուստեք յամենայն կողմանց ժողովեալ էին . և աշխարհականք 'ի զօրացն արքունի, բազումք մեռան ինքնակամ յօժարութեամբ յանուն մարտիրոսութեանն . և եղեն վկայք Ճշմարիտք մեծի անուանն Աստուծոյ, և պսակեցան 'ի Քրիստոսէ Յիսուսէ փրկչէն մերմէ :

Ժ . Այսպէս կատարեցաւ սուրբըն Շմաւոն եպիսկոպոս 'ի Շապ-

Հոյ Պարսից արքայէ յաւուր չարչարանաց տեառն մերոյ, հարեւր արամբք ժառանգաւորօք սուրբ եկեղեցւոյ, և այլ անթիւ բազմութեամբն, և ընկալան զպսակս անապականս 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր. որում վայել է փառք և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։



# Ի ՎԿԱՑՍՆ ԱՐԵՒԵԼԻՑ

. . . . . . . . . . . . . . . . . . .

Ո՛վ քանի ցանկալի է տաճարն որ շինեցաւ 'ի պատուական ազատութենէ․ ո՛վ քանի՛ գեղեցիկ է յարկն որ յարկաւ 'ի կամաց կամարարաց․ ո՛վ քանի՛ ահաւոր է սեղանն որ ուղղեցաւ արեամբ և սպանմամբ մարդկան, զարիւն և զսպանումն Քրիստոսի կարգեաց յօրհնեալ եկեղեցւոյ։

Քեզ օրհնութիւն՝ տէր մեր և փրկիչ, որ վասն փառաւորութեան հարսին քո հեղեր զարիւնդ պատուական, և առիթք և հարսնեղբարք հարսինն ընդ նմին օրինակի նմանեցուցին, և հեղին զարիւնս իւրեանց վասն նորա։ Ո՛վ հարսն խօսեալ արեամբ փեսային և փեսաւիրացն, և առեալ 'ի կնութեան արեամբն Աստուծոյ և մարդկան․

ո՛վ քանի՛ ծանր են վարձանք քո՝
հարսն ցանկալի, քանզի արիւն է.
ո՛վ քանի՛ մեծ են հարսանիք քո,
քանզի սպանումն է: Խաչեալ է
փեսայն առ ՚ի հաստատութիւն
հարսնութեան քո, և կոտորեալ
հարսնեղբարքն առ ՚ի պէտս հար-
սանեացն. և խառնեալ արիւն փե-
սային ըմպելի քեզ, և բաշխեալ
մարմին նորա ՚ի մասունս հարսա-
նեաց քոց: Նստիս յառագաստ խա-
չելոյն և ուրախ ես. ննջես ՚ի սե-
նեկի քարկոծելոցն, և զուարթ ես.
ընթեռնուս զնամակս սպանելոցն՝ և
յանհոգս կաս. կարդաս զգիրս խող-
խողելոցն՝ և ծիծաղիս: Դադա-
րեալ են աչք քո ՚ի լալոյ և յե-
ցեալ ՚ի յոյս. չելանէ կառաչ ՚ի բե-
րանոյդ և յանձնապաստան ես:
Վասն այսորիկ ետ քեզ սուրբ փե-
սայն զմարմինն իւր յուտել, զի ըզ-
կենդանի մահ նորա յիշեսցես հե-
ծութեամբք. և վասն այսորիկ ետ
քեզ զարիւն ըմպել, զի զանարատ
զսպանումն նորա կալցես միշտ ՚ի
մտի արտասուօք: Զմտաւ ած և տես

յու փրկեցար . քննեա և ծանիր յու գնեցար ։ Պատարագեալ է գառն սուրբ 'ի պատիւ քոյոյ քաւութեան . պատարագեալ դասակք օդեաց 'ի տաւն քո ուրախութեան . զենեալ է պատարագն յուրախութիւն հարսանեացն քոց . զենեալ որթք անդուոց 'ի զուարճութիւն քո ցնծութեան . հատեալ հացն ցանկալի 'ի լիութիւն քոյոյ սեղանոյդ . խառնեալ գինի անուշահամ 'ի քո թակոյկսն խառնելիս ։ Տուեալ գիր սրբութեան առ 'ի գիտութիւն քոյոյ իմաստութեանդ . տարածեալ ընդարձակեալ տեղի քոյոյ խորանին , և կանգնեալ խորան սքանչելի 'ի պատիւ փառաց քոց ։

Գրգիս 'ի տաճարի. որ շինեցաւ 'ի հզօրաց . և բազմեալ ես յապարանս՝ զոր զարդարեցին պնդակազմքն . գան քեզ պատարագք 'ի հեռաստանէ , և տասանորդք 'ի չորից կողմանց երկրէ . ուտես զարգիւնս կալոյ , և ըմպես զազնուական գինիս հնձանաց ։ Ո՞չ գիտես որչափ ջանացաւ Աստուած վասն

քոյոյ հանգստեան. ո՞չ իմանաս որ-
չափ ճգնեցան հարքն քո վասն քո
շահի և օգտի. քանի՞ ինչ բերան
ունիս գոհանալոյ. ո՞րչափ լեզու
ունիս առ ՚ի փառաւորել: Ընկեցին
քեզ տաճար առ իւրեանց սպան-
մամբն, և կանգնեցին խորան իւ-
րեանց արեամբն պարանոցաց. ե-
ղեւ Քրիստոս սկիզբն և կատարումն
շինուածոյն, որպէս և գրեալ է.
եթէ Նա է գլուխ և հիմն շինուա-
ծոյն, և Նովաւ յանգի ամենայն շի-
նուածն, և շինի տաճարն սուրբ և
փառաւորեալ:

Եւ զայնցանէ որք պատարագե-
ցանն և պատարագինն՝ ասէ. Ընդ-
նմին շինին բնակութիւն Աստուծոյ
՚ի ձեռն Հոգւոյն. տաճար էք, ա-
սէ, դուք Աստուծոյ և Հոգի Աս-
տուծոյ բնակեալ է ՚ի ձեզ. և զՔրիս-
տոսէ ասէ, եթէ Ես իբրեւ իմաս-
տուն ճարտարապետ հիմն եդի,
այսինքն է Յիսուս Քրիստոս: Եւ
զծառայիցն ասէ, թէ Տաճար Աս-
տուծոյ սուրբ է, այսինքն է դուք.
և մարգարէն ասէ, թէ Ի տանդ զոր

չինեցէք ինձ՝ չեմ բնակելոյ՝ ասէ Տէր, այլ 'ի հեզս և 'ի խոնարհս բնակեմ, որ դողան 'ի բանից իմոց, յոր բնակեցաւ և բնակեսցէ ։ Եւ ետուն ընդ նորա զանձինս ըստ կարի զօրութեանն իւրեանց. զի յայտ լիցի սէրն զոր ունէին ընդ նմա, ոչ բանիւք այլ կարեօք արդեանց ։ Աղաղակէր վասն սիրոյն և գուշակէր վասն գթոյն, և ծածուկ խորհուրդք նոցա զյայտնի մատոյցն գուշակէին ։ Դրօշմեցին ընդ լեզուոյն զարիւնն, և ընդ նշանագրոյն՝ զատանջանսն. ընդ եղեգանն՝ զսուրն սայրասուր. ընդ մագաղաթին՝ զանդամսն. զի իմաստունք գայրութեամբ ընթերցցին և հանճարեղք մտօք 'ի միտ առցեն. տեսցեն, որչափ ինչ մեծ է սէր արդեանց զոր ցուցին. որչափ ինչ խոստումն խոստացեալ է ընդ գործոցն զոր գործեցին ։ Այս է տաճար հաստատուն և փառաւորեալ, որ ազգի ազգի մեծապայծառագունովք զարդարեցաւ յիմաստնոց և յարուեստագիտաց ։ Տաճար էք դուք, ասէ Տէրն, տաճար էք Աս-

տուծոյ, եթէ հաճոյ արասջիք ընդ-
ճանապարհս ձեր և զգործս։ Այս-
այն տաճար է, զոր և տէրն կան-
գնեաց ամենայն գունովք յերրորդ-
աւուր. և նորա մտօքն բնակեցին 'ի
նմա ազգէ յազգ մինչեւ յաւիտեան.
որպէս և գրեալ է. Զի թէպէտ և
երկրաւորքս քակտելոց է, այլ ու-
նիմք մեք շինուած առ Աստուած,
տաճար առանց ձեռագործի յեր-
կինս յաւիտենական. վասն այսր
շինուածոյ ասէր առաքեալ շինիչն
եկեղեցւոյ, եթէ Շինեցայք դուք
'ի վերայ հիման առաքելոց և մար-
գարէից. եւս. Տեսցէ ամենայն ոք,
իւրաքանչիւր զինչ և շինեսցէ 'ի վե-
րայ հիմանս այսորիկ, ոսկի և ար-
ծաթ կամ թէ ականս պատուա-
կանս, կամ թէ խոտ թ'եղեգն և
խաւիւ, զ'իւրաքանչիւր գործն յայտ-
նելոց է յաւուրն յայնմիկ։ Իսկ վը-
կայքն Քրիստոսի նահատակքն՝ ին-
քեանք անձամբք եղեն ոսկի ընտիր
'ի գործ հիմանն, և ականք պա-
տուականք 'ի նիւթ շինուածոյ։ Այլ
Թերեւս և Եսայի յայս շինուած

հայեր՝ յասելն , եթէ Աստուածն առնեմ զքարինս քո բիւրեղս , և զհիմունս քո շափիւղայ քարամբք ուղղեցից , և շինեցից զորմս քո յասպիսս , և զդրունս քո յականս վանեայս , և զսահմանս քո ամենայն ընտիր ականմբք պատուականօք . և շինեսցեն որդիք օտարաց զպարիսպ քո ։ Եւ Զաքարիա ասէ , թէ Ականք սուրբք և պատուականք և նոր՝ ընկեցեալ լինէին յերկրին տեառն ։

Բ . Նահատակեալ վկայքն մեծազօրք մինչ՚ի թշնամեացն և՚ի հալածչացն արդարութեանն ՚ի չարչարանաց և ՚ի նեղութեանց ՚ի մէջ կային , զաչս ՚ի վեր համբարձեալ ՚ի մարդասէրն փրկիչն որ կախեցաւն զփայտէ՝ հայէին և լինէին ժուժկալեալք . և զբարերարն Աստուած որ պրկեցաւն ՚ի Գողգոթա՝ տեսանէին և զօրանային . ըստ այնմ զոր առաքեալն ասէ , թէ Ուրախ եմ յորժամ պատարագիմ ըստ պատարագելոյ պաշտամանն Քրիստոսի . և դուք , ասէ , առաւել ուրախ լե-

րուք 'ի չարչարանս ։ Պնդակազմ, քաջալերութիւն առաքինեացն՝ զանսիլ խաչին տեսանէր և զօրանայր . և ժուժկալ համբերութիւն նոցա 'ի չարչարանս կենարարին հայէր , և սիրան պնդէր . աչք նոցա զծակս բեւեռաց Տեառնորդւոյն տեսանէին և լուսաւորէին . և ականջք նոցա զքաղցր բարբառ խաչելոյն լսէին և հանգչէին . իսկ յորժամ զծարաւ և զլեղի անարատին յիշէին՝ ցանկալի ոգիքն ճգնելոցն զուարճացեալ ցնծային ։ Եւ յորժամ զխոնարհել գլխոյ փրկչին և զվերանալ հոգւոյ յիշէին , զչարաչուք մահ դառնութեանն առ ոչ ինչ համարեալ արհամարհէին . ըստ այնմ որ ասէ , Թէ Ծանիր զՅիսուս Քրիստոս և զզօրութիւնն յարութեանն . և վասն այնր որ պատկօք փշոց պսակեցաւ , զցանկալի և ըզվայելուչ պսակ աշխարհիս անարգեցին . և վասն այնր որ եղեգամբ ձաղանացն թշնամանէին , ոչ արարին ցուպ և ապաստան զեղէգն ջախջախ , այսինքն զմարդ մահկանա-

ցու. այլ ո՞ւր յաղթութիւն քո մահ, ո՞ւր են խայթոցք քո դժոխք, աղաղակէին: Ջգեցան զխոնարհութիւն հեզոյն, և խիստ բանիւք ըղթշնամիսն խոցոտէին. և զարհամարհողս խաչին՝ անուամբ խաչին երգիծուցանէին: Արկան զիւրեամբք զլռութիւն, զի ոչ եղեն անձանց ջատագով, և զատելիս Ճշմարտութեանն Ճշմարտին՝ Նախատէին: Եդին առաջի աչաց զյարութիւն յարուցելոյն, սիրով և ցնծալից ուրախութեամբ հասանել՚ի յարութիւնն ձեպէին. քանզի հաւատացին սրտի մտօք բանին տեառնն զոր ասացն, թէ Ես եմ յարութիւն և կեանք. և որ զհետ իմ գայ ոչ մեռանի, և մահ 'ի վերայ նորա ոչ տիրէ:

Ո՞վ սքանչելի չարչարանք և զարմանալի մահ Փրկչին. զիարդ փութացուցանէ ջերմեռանդն սիրով զհանճարեղսն ձեպել մատուցանել զմարմինս նմա պատարագ: Ո՞վ քաղցր գութ կենարարին որ յորդորէ և քաջալերէ զհաւատացեալս զի արբցեն և արբեսցին և արհա-

մարհեսցեն զմահ ահագին, և զըս֊պառնալիս դառնաշունչ իշխանացն ։ Ո՛վ ցանկալի ողկոյզն Աստուծոյ՝ որ ճմլեցաւ 'ի կենդանի բաժակն սըր֊բութեան, զոր ճաշակեցին խորա֊մանկք և միամտեցին կոխել զիւ֊րեանց ողկոյզս ըստ նմին նմանու֊թեան ։ Ո՛վ պատմուճան ներկեալ արեամբ արարչին, զոր արկին ճըշ֊մարիտ վկայքն ընդ նորին օրինակի, և ներկան արեամբ անձանց իւ֊րեանց ։ Սպիտակացուցանէ գինով զպատմուճան իւր, և արեամբ խա֊ղողոյ զզգեստ իւր · գունեան են աչք նորա քան զգինի, և սպիտակ ատա֊մունք նորա քան զկաթն ։ Ո՛վ ըզ֊գեստ փառաւորեալ և զարմանալի, որ յորժամ մտանէ կարմիր յառա֊գաստն՝ գտանի անդ սպիտակ ։ Այս այն պատմուճան փառաց է որ բըղ֊խեաց ջուր և արիւն 'ի կողից իւրոց · զի ջուրն լիցի լուանալ 'ի մկրտու֊թիւն, և արիւնն 'ի քաւութիւն մեղաց ։ Ո՛վ հանդերձք սքանչելիք սպիտակք և կարմիրք, որ կաթամբ կարմրանան և գինեաւ սպիտակա֊

նան . այս այն պատմուճան վայե_
լուչ է , յորմէ ըղձեալ սուրբ բըղ_
խումն փրկութեան . այս է պատ_
մուճան սքանչելի , որ յորժամ պա_
տառի՝ յայնժամ լինի ողջանդամ ։
Ո՛վ հանդերձ մեծ և երկայն , յոր_
ժամ աշխատեցան ձեռք ապական_
չացն և ոչ կարացին քակել . այս է
պատմուճան նոր բազմադիմի , զոր
նիւթեցին չարչարանք և հասին նե_
ղութիւնք , և արկին տանջանք և ե_
հատ սուրն սայրասուր . Թափեաց
սպանութիւն և սպիտակացոյց ա_
րիւն . պատառեցին չարչարանք և
կարկատեաց աջն վերին զոր աս_
տուածութիւնն զգեցաւ , և մարդ_
կութիւնն զարդարեցաւ . այս է
հանդերձ ցանկալի ներքնեալ անա_
րատիցն , որ եղեւ ծիրանի պա_
տուական 'ի զարդ արքայութեանն ։

Գ . Սոքա են լուսաւորութիւնք
սպանեալք , որ ծագեն իբրեւ ըղ_
փայլատակունս մեծաշուք փառաց .
և դէմք քարկոծեալք և լուսաւո_
րեալք իբրեւ զճառագայթս արե_

դական. առողջ անդամք, որ ոչ
ծիւրան 'ի յերկար հիւանդութեան
սաստկացեալ ջերմանն ։ Անցաւք
հաստ ոսկերք, որ ոչ ծնկեցան
յանհնարին ցաւսն աղեաց. ազատ
ետառնորդիք, զոր ոչ հնազանդեաց
թունութեամբ մահաբեր հրեշտակն
'ի չարաչար ցաւսն անդարձ հիւան-
դութեանն, որ լուծին քակեցին
զդատավճիռ անօրէնութեանն Ա-
դամայ, ձայնատուր լինելով, և 'ի
միմեանս խորախոյս տալով պնդա-
կազմ կամօքն իւրեանց ։ Ո՛վ հաւա-
տացեալք, որ կազմեցին զաստի ըղ-
կեանս իւրեանց վասն երկայն և
ընդ երկար յուսոյն. զի գուցէ եր-
կայն իցէ վախճանս անցաւոր, և
կարճ իցէ յանկարծ վախճանն որ
կալոցն է ։ Ո՛վ սկզբունք անուա-
նիք մերձաբարձք երկայնահաստկք,
բարձունք քան զամենեսեան, որք
ոչ կորացուցին զպարոյթն պարա-
նոցան ընդ լծով անիծից մահու ։
Ոչ ոք սպասեաց աչաց նոցա 'ի մա-
հիճան ախտալիցս, և ոչ ծիւրան և
ծնկեցան յանկողինս ցաւագինս. ոչ

պատեցին զնոսա հարք և մարք, և ոչ լացին և ողբացին քորք և եղբարք. ոչ աշխարեցին զնոսա հարազատք և տոհմայինք, և արկին ձայնս և լացին ձայնարկուք իմաստունք. ոչ թաղեցին զնոսա բարեկամք և մեձաւորք. ոչ մտին 'ի սուգ սիրելեաց նոցա ծերք և պատաւունք միխթարել զնոսա. զի ճշմարիտ միխթարիչն կայր առաջի նոցա և միխթարէր:

Եւ երանելի են նահատակքն, զի արդ յօթեվանս հանգստեան միխթարեն զնոսա սիրելիք իւրեանց և տէրն արարիչ հասարակաց. երանի՛ ճշմարտից, զի ինքնին տէր ունի զձեռանէ և յարուցանէ. երանի՛ առաքինեաց, յորժամ նորոգեսցին մարմինք նոցա 'ի գալուստ անդրէն միւսանգամ ոգւոց իւրեանց, ըստ այնմ որ ասէ, թէ Մեռեալք լուիցեն ձայնի Որդւոյն Աստուծոյ և ելցեն 'ի գերեզմանաց. և Եսայի ասէ, թէ Կեցցեն մեռեալք քո և կանգնեսցին դիակունք նոցա. զարթիցեն օրհնեսցեն զքեզ ամենեքեան

որ ննջեցեալ իցեն 'ի հող. և առաքեալ ասէ, թէ Ինքնին տէր իջանէ յերկնից, և մեռեալք որ 'ի Քրիստոս են՝ յարիցեն յառաջագոյն. և դարձեալ ասէ, թէ Յարուցէ զմեզ մարմնով 'ի մեռելոց, որպէս և ինքն իսկ անձամբ եցոյց զօրինակն: Եւ հրեշտակն ասաց ցԴանիէլ, թէ Երթ 'ի վախճան հանգիր, յարիցես 'ի ժամանակի քում՝ 'ի կատարած աւուրց:

Ո՛վ փեսայք ցանկալիք և մեծասքանչք, որոց են ոգիք իւրեանց իբրեւ զկոյսս խօսեցեալս, և ետուն ընդ նոսա վարձանս ճշմարտութեան զժամանակեայ կեանսն իւրեանց. և եղեն նոցա մեծապէս հարսանիք զենումն և պատարագել մարմնոցն իւրեանց. և Թակոյկք գինւոյն հարսանեացն պատուական և մեծ արիւնն պարանոցացն: Նոքա են գառինք սպիտականդամք, որ սպիտակացան, և պարարեցին 'ի զենմանն. յորոց առաջին նուիրեալքն 'ի սպանմանն ուրախ լինէին, և վերջին կոչնականքն 'ի մահուան նոցա

պարարին ։ Այս է բազմական՝ սուգ և զուարթ ․ սուգ վասն չարաշուք մահուանցն տեառնն և վկայիցն իւրոց ․ և զուարթ վասն մարմնոյն և արեանն որ տուան 'ի քաւութիւն և 'ի փրկութիւն, վասն սպանման վկայիցն որ եղեն հաշտեցուցիչք աշխարհիս ընդ արարիչն ։ Այս են հնձանք ուրախութեան և տրտմութեան ․ թէպէտ և տրտմութիւն է վասն անխնայ առ ոտսն կոխելոյ զանմեղսն ․ այլ ուրախութիւն՝ զի ինքնակամ կամօք ետուն զանձինս իւրեանց 'ի կոխումն անարատքն ։ Այս է հնձանահարքն, որ հարին հնձան անողորմ բարկութեամբ և յորդորեցին լցին զգուբս արեամբ ։ Այս է արիւն որ սպիտակացուցանէ զմարմինս սպանելոցն, և սեւացուցանէ զոգիս արիւնահեղացն ․ այս է արիւն որ զուարճացուցանէ զմիտս առողջաց քաջալերութեամբ, և հաշէ զմարմինս հիւանդաց խրախոյսն տալով նահատակացն ․ այս է արիւն որ մոռացուցանէ զցաւս որդւորաց մխիթարութեամբ և բառ_

նայ զօրութիւն մտաց դառնացելոց իւրովք սփոփիչ ուրախութեամբք ։

Դ․ Ո՜վ քանի մեծ են խորհուրդք քո որդի, որ արարին այսպիսի բազմադիմի սքանչելիս յարարածս․ ո՜վ քանի վայելուչ են օրինակք քո Միածին, որ ցուցին այսպիսի բազում արուեստս յաշխարհի․ ո՜վ խաչեալ որ խաչեցար իբրեւ նահատակ ոք, քանի՜ մեծ և զարմանալի է զօրութիւն քո 'ի հեթանոսս․ զի առ քոյոց ջերմեռանդն գթոյդ ահաւասիկ ելանեն 'ի խաչ կենդանիք փոխանակ քո․ մեռար և կենդանացար, զի ուսուսցես թէ մեռեալք որ վասն քո մեռանին՝ կենդանի են, և կենդանիք որ ոչ ըստ քո կամացդ վարիցին, կենդանւոյն մեռեալ գտանին ։ Իջեր մի՝ և հաներ ընդ քեզ բազումս, իբրեւ ըզցորենահատ որ մեկնակի իջանէ միայն և վերանայ պտակեալ բազում ընկերանեաւ ։ Կեցուցեր ըզմեռեալս 'ի կենդանութեան քում,

և մեռուցեր զկենդանիս ՚ի մահուան
քում. մեծապէս և անպատում է
փոփոխումն զոր ցուցեր. զի արա-
րեր զՃանապարհ յուսոյ ՚ի վերայ
անյոյս մահու, և արարեր կամուրջ
անցանել զանդարձ գժոխօք. զի
եկեսցեն անկասկած զկնի քո ՚ի բա-
նակս ապանելոցն՝ որ մեռան վասն
քո. եղին ՚ի հետս քո և անցին ըղ-
խոհերօք և զատուերօք մահուց. և
ոչ երկեան կամ զարհուրեցան. զի
զխաչն քո խաղաղարար ՚ի վերայ
ունէին ուսոց իւրեանց: Գնացին ՚ի
մէջ չարեաց և ոչ զանգիտեցին. զի
զգրոշմ խաչին պահապան յապա-
կանչացն ունէին ՚ի մէջ աչաց: Շըր-
ջեցան ՚ի մէջ պատանիչաց և ոչ վնա-
սեցան. զի պատրաստութեամբ ա-
ւետարանին վառեալ էին ոտք իւ-
րեանց. անկան ՚ի մէջ աւազակաց և
ոչ պարտեցան. զի զսաղաւարտն
յուսոյ ունէին ՚ի գլուխս իւրեանց.
և եղեն նպատակ թիւնամուխ նե-
տից թշնամեացն. և ոչ խոտորե-
ցան. զի զէնն գործեալ յաւազա-
նէն զգեցեալ ունէին յանձինս իւ-

ըեանց ։ Մտին 'ի մէջ ծովածաւալ
ծովու դայթակղութեանց և ոչ
վնասեցան ․ զի նաւն հաւատոյ ա-
ռաջնորդութեամբ Հոգւոյ քո ե-
հան զնոսա 'ի ցամաք ․ թռեան ընդ
խաւար օդոյս այսորիկ , և ոչ եղեն
նոցա արգել յիշխանէն խաւարի ․
զի երկայնատարած թեւք սիրոյդ
քո անցուցին զնոսա ցամաքաթեւ ։
Գրեցան անօրէնութիւնք նեղչաց
նոցա գրչաւ երկաթեաւ , և հաս-
տատեցան եգին 'ի պահանջումն
հատուցման ․ դրոշմեցան մեղք սպա-
նողաց նոցա 'ի վերայ հաստատուն
սալի , և պահեցան 'ի վրէժխնդրու-
թեան և 'ի դատաստան ։ Քննեա
տէր Աստուած զճանապարհս նոցա
չարս , և հատո ըստ գործոց նոցա
բազմապատիկ 'ի ծոցս նոցա ․ որպէս
և գրեալ է , թէ Ես եմ տէր Աս-
տուած քո որ դատիմ զսիրտս և
քննեմ զերիկամունս , և հատուցա-
նեմ մարդոյ ըստ ճանապարհաց իւ-
րոց , և ըստ պտղոյ գործոց ձեռաց
իւրոց ։

Ե. Սկսայց այսուհետեւ պատ-
մել գողալով զչարչարանս որ եկին
'ի վերայ ազգիս մերոյ, և զանար-
գանս և զաւականս զորս կրեցին
ժողովուրդք մեր, զանհնարին նե-
ղութիւնսն որ եկին 'ի վերայ աշ-
խարհիս, և զդառն ժամանակն որ
եկն եկաց 'ի վերայ մեր. զտանջանս
բարկութեան և զխորատ ողորմու-
թեանցն, զգազանութիւն թագա-
ւորացն՝ որ խանձեալ էին ուտել
զմիս և զարիւն մարդկան. որ յա-
ռեւծ սատակիչ առակեալ է ըստ
գրոյն, և յարծուի արագաթեւ.
որ ունի 'ի ձեռին իբրեւ զմատռուակ
զբաժակն բարկութեան, և արբու-
ցանէ զամենայն ազգս. յետոյ ըմպէ
և ինքն զմրուրն և յիմարի: Բաժակ
ոսկի, ասէ, Բաբելոն 'ի ձեռին
տեառն, և ում կամի խոնարհե-
ցուցանէ զնա. արբցին և արբեսցին,
և տապալեսցին ամենայն ազգ եր-
կրի. գազան ահաւոր և սաստիկ է,
և սատակումն 'ի վերայ ամենեցուն
հասանէ անողորմ: Սա է որում

մատնեցաւ Իսրայէլ վասն անօրէնութեան, և առ 'ի նմանէ զվրէժ հատուցմանն. և եհան ընդ ըղընգունս Նորա զշրոշակս և զկարկանդակս զոր ունէր 'ի վերայ լերանց բարձանց և 'ի ներքոյ ծառոց վարսաւորաց: Սա է որ եկաց հակառակ արեւմտից և հնազանդեաց ըզհիւսիւսի և վանեաց զհարաւ, և եղծ ապականեաց աստէն զիւր աշխարհս. որպէս և ասէ Եսայի, Թէ Զերկիր քո ապականեցեր և զազգկոտորեցեր. և մեք առ մեղս մեր՝ զի բարկացուցաք զԲարձրեալն՝ անկաք 'ի ձեռս Նորա ընդ երկար ժամանակս:

Այս քառասուն ամ է զի պըրկեալ կան միանունք մեր 'ի գանս և պարանոցք 'ի սուր սուսերաց. զի կարկեցոյց զմեզ արդար դատաստանն Աստուծոյ առ ամօթի մերում. ըստ այնմ զոր Երեմիայն ասէ, Թէ Լուա լիցի զի կարկեցոյց զմեզ, և արբոյց մեզ ջուր դառնութեան վասն մեղաց մերոց: Սպասեցաք խաղաղութեան և չէք ուրեք

խաղաղութիւն. և ակնկալելիք բա-
րեաց` և հեռացաւ 'ի մէնջ. և ժա-
մանակ բժշկութեան` և եղեւ մեզ
տրտմութիւն. զի եւ առեւծն յան-
տառէ մրմռեալ 'ի վերայ սակաւ որ-
թոյ հօտին, կոտորեաց 'ի նմանէ
որպէս և կամեցաւ, ցրուեաց կո-
րոյս ըստ ախորժեաց. զխոյս և ըզ-
մաքիս առ ոտն կոտորէր, և զգա-
ռինս և զորոջս թունաւոր ճիրա-
նամբք պատառէր. և քանզի այ-
ծեացն սեւացելոց ոչ մեղանչէր,
բազում ոչխարք մարմառոտք վասն
տարելոյն 'ի նմանէ 'ի սեւացեալ
գոյնն փոխեցան: Ո՜վ ազատու-
թիւն անձնիշխան, որ ներկանէ
զանձն պէսպէս գոյնս յոր և կամի.
թէ կամի 'ի տգեղութիւն, և թէ
կամի 'ի սպիտակս, և թէ կամի 'ի
թուխս. այլ գիտասցէ զի սպի-
տակքն 'ի փառս և 'ի պարծանս լի-
նին, իսկ թուխքն 'ի կորանս և յան-
արգանս:

Զ. Սերմն սակաւ և անզօր էր
աշխարհիս մերոյ զոր սերմանեցին

մշակք ժրագլուխք լալով և հանապազօրդ արտասուօք · գնալով զընայլն , աւէ , և լայլն , որ բարձեալ տանէին զսերմանս ։ Դարմաններ և սնաններ մեղմով արեւմտեայ օդոյն · և մինչչեւ օդոյն 'ի չափ հասեալ էր և ոչ հասկացն խիւս առեալ և պնդեալ համարձակ , յանկարծ սաստիկ եւ խորշակահար հողմն արեւելեայ և զմեծ մասն հասկացն ապազեցոյց առանց խիւսոյ · բայց կէս հասկոցն առաւել եւս պնդեցան և պարարեցան և արժանի եղեն ելանել 'ի սեղան Թագաւորին ։ Իբրեւ տեսին ապականիչքն թէ գեղեցիկք և ցանկալիք են որք մնացինն , եկին հնձել առ նախանձու ոչ մնանդաղջք , որպէս և օրէնն պահանջէր , այլ սայրասուր սուսերօք ըստ չարութեան կամաց իւրեանց ։ Եւ քանզի ոչ էին նոցա գործ և ջան՝ ոչ ամփոփեցին զնոսա 'ի գագիշս 'ի քիստս իւրեանց , ըստ այնմ որ ասէ , թէ Մտցէ հանգստեամբ 'ի գերեզմանս և իբրեւ զգագիշս որ կանգնի 'ի ժամանակի , իբրեւ զապա-

կանխիչս և զօցտիչս վառանէին զորայսն ընդ դաշտսն, և ցանէին ցրուէին, զի լիցին կոխան գազանաց երկրի և կերակուր Թռչնոց երկնից։ Իսկ ակարըք և քաղցեալք որ կարօտեալ փափագէին կենդանի հացին, նոցա սիրով և երկեւղիւ զանձն 'ի մահ գնէին. Երթեալ քաղէին զմնացորդս որայիցն զի լիցին կերակուր զանկեալ մարմնոց անկելոց, և դարման և փափագ նեղեալ ոգւոց վըշտացելոց. ըստ այնմ որ ասէ, Թէ Գալով եկեսցեն և ցնծասցեն, ոյք բարձեալ բերիցեն զորայս իւրեանց։ Այս է բոյս որ կոտորեցաւ 'ի սայրասուր սուսերացն և ամփոփեցաւ երկնի գաղիչ, և ժողովեցաւ եմուտ 'ի շտեմարանս հոգեւոր։

Ի. Սուր սուսերացն միշտ 'ի մարմնոցն քահանայիցն ուտէր և քաղցնոյր, և յարենէ առաջնորդացն ըմպէր և ծարաւէր. քանզի հրաման սրոյն 'ի սատակ Թագաւորէն էր 'ի վերայ նոցա տագնապաւ յառաջնումն. և 'ի ձեռս Թշնա-

մեացն որ ծառայէին արեան ան-
ձանց նոցա, մոգուց խաբեբայ ուս-
մանն մատնեցան. ըստ այնմ զոր
Մովսէսն ասէ, թէ Թշնամիք մեր
եղեն մեզ դատաւորք, և առաւել
յեղբարց և 'ի տոհմայնոց և 'ի բա-
րեկամաց նեղէին և հալածէին: Եւ
կատարեցաւ բանն զոր ասաց, թէ
Ատեսցեն զձեզ յամենայն տեղիս
վասն անուան իմոյ, և մատնեսցեն
զձեզ հարք ձեր և եղբարք և տոհ-
մայինք և բարեկամք, և սպանանի-
ցեն 'ի ձենջ. և մազ մի 'ի գլխոյ ձեր-
մէ մի կորիցէ, և համբերութեամբն
շահել զոգիս ձեր: Այս ամենայն
յայնմ ժամանակի կատարեցաւ առ
վկայսն սուրբ և երանելիս ար-
դեամբք: Զի՞նչ մահ անհնարին էր
զոր ոչ ածին դատաւորքն 'ի վերայ
մեծազօր վկայիցն. կամ զո՞ր տան-
ջանս դառնութեան թողին Թշնա-
միքն եկեղեցւոյ. և ոչ այնու զճըշ-
մարիտ ծառայսն Աստուծոյ կասե-
ցին. կամ զո՞ր չարչարանս և ըղ-
լլկանս թողին Թշնամիք ժողովըր-
դեանն Քրիստոսի. և ոչ այնու

զայնդակազմն և զպատերազմողն չարչարեցին ։ Զկէսն 'ի քաղց և 'ի ծարաւ ճգնեցուցանէին , մինչեւ ծորէին մարմինք նոցա և մեռանէին. զկէսս գլխիվայր կախէին զմիջօրեայ ժամանակն , ոսկրաքանց առնէին և մեռանէին. զկէսս քարկոծելով ըղյօդս Թիկանցն առ 'ի պրկել և ձգել բազում արանց , լուծանէին և սպանանէին. զկէսսն համապազորդ գանիւք՝ արիւնաուշտ առնէին և սպանանէին ։ Զկիսոց անհնարին գելլոցօք խորտակէին զկողս և զոսկերս և սպանանէին. և զկէսս 'ի ցուրտ և 'ի պարզ ընկենուին, մինչեւ պրկէին մարմինք նոցա և մեռանէին. և զկիսոց կորոցօք առ ոտկաւ սակաւ քարշէին զմարմինս ոսկերացն և սպանանէին. և զկէսն չարաչար մորթելով սպանանէին. և զկիսոց գայլիկոնօք ծակէին զպաճղունսն և սպանանէին ։ Եւ կիսոցն՝ եղեգն հերձեալ համգոյն հասարակացն գնէին շուրջ , և պնդէին լարօք ընդանդամսն , և մի մի ձգէին հանէին հանդերձ մորթովքն և մսօքն և ջը-

զօք , և այնու սպանանէին . և ըզկէսքն քարամբք անողորմ ծեծէին և սպանանէին ։ Թող զայլ կտտանսն զոր կատէին . և զունչսն հատանէին , և զականջսն խլէին , և զմատունսն կտորէին , և զաչսն փորէին , և ըզբարձսն և զծունկսն ուռամբք խորտակէին ։ Եւ զկէսս զբուլթից ոտիցն կախէին . և կիսոցն խեցիս ջեռուցեալ յանթսն դնէին և պնդէին . և կիսոց՝ զքուրձ մոխրով լնուին և Թաղէին. զգլուխն 'ի ներքս . և կիսոց՝ քացախ և մանանիխ արկանէին և շփէին ։ Կիսոցն ասեղունս ընդ եզենգնաքերանսն վարէին յանխնայ . կիսոց փշեղէն գաւազանօք նորգէին օր ըստ օրէ զհարուածսն ։ Եւ դարձեալ յետ այսր ամենայնի անհնարին չարչարանաց և կտտանաց՝ զգլուխն սրով հատանէին . բայց 'ի միջէ միայն խորամանկութեննէ զոր եմոյծ ազատութիւն յաշխարհս՝ պահեցին զերանելիսն . զի հրով զօք ոչ այրեցին . քանզի զհուրն պաշտէին . և Թերեւս վասն զի 'ի Բաբելոնէ յամօԹ եղեն . զի քաղցու-

ցին զհուրն և ետուն նմա կերակուր զԱնանիանոսն, և ոչ իշխեաց մատբերել 'ի նոսա :

Ը. Նոքա են մշակք աշխատեալք և դատարկք. ոչ ջանացան ընդ արդարսն և եղեւ հատուցումն նոցա վարձուցն ծախք և վնասք. Նոքա են սատարք գործարանք՝ որ վաստակեցին 'ի նահատակսն, և եղեւ փոխ վաստակոցն ամօթ և պարտաւորութիւն. Նոքա են դատաւորք յանդըգնունք, որք վայրենամիտ իշխանութեամբն շահեցան իւրեանց ժառանգութիւն զյաւիտենական ըղհուրն և զորդն և զլալիւն և զկրճիւն ատամանց. ըստ այնմ զոր Մովսէսն ասաց, թէ իմ է հատուցումն և ես հատուցանեմ նոցա, և 'ի ժամանակի յորում լիցի նոցա ոտնսառ. զի մերձ է օր բեկման նոցա և ձեպեալ է հասանել որ ինչ պատրաստեալ է նոցա. և ես, ասէ, Աստուած նախանձոտ եմ, հատուցանեմ զմեղս հարց որդւոց յերիս և 'ի չորս դարս ատելեաց իմոց : Եւ վասն մերոյ ազգիս

խրատու ասէ, թէ տէր դատի զժողովուրդ իւր և 'ի ծառայս իւր մխիթարի: Հատուցանեմ, ասէ, ողորմութիւն 'ի հազար դարս սիրելեաց իմոց և ոյք պահեն զպատուիրանս իմ:

Ո՛վ Նահատակք պատերազմողք զօրաւորք զօրութեամբք, առաքինեալք զինուն ազատութեան, մնեալք 'ի պատերազմ պատենազէն զինուն կազմութեան, որ ժամանակեան անդակազմ մարտիւն տացան զառաւել յաղթութիւնն յաւիտենական: Այս են չարչարանք սակաւ ժամուց և թուովլ աւուրց որ ընկալան մխիթարութիւնս խոստամամբք պատրաստեալ յուսոյն, և առին 'ի սփոփութիւնս աւետօք հաւատոց. այս է ժամանակեան տրտմութիւնք, զոր մուացոյց յանվախճան ուրախութիւնն. այս է սէր Ճշմարիտ, որչափ և մնանէ 'ի քննութիւն, եւս քան զեւս վառի և նորոգի. զի զօրութեամբ հեռաւոր խոստմանցն յաղթեցին մերձաւոր տանջանացն. ըստ այնմ, թէ փոր-

ձեցեր զմեզ Աստուած և քննեցեր, որպէս և քննի արծաթ. Անցաք մեք ընդ հուր և ընդ ջուր, և հաներ ըզմեզ 'ի հանգիստ քո: Այսուհետև զան պատուով 'ի տուն քո Քրիստոս. հաստուցանես հաղորդապատիկ ընդ վաստակոց նոցա յաղթայութեանն:

Այսպիսի և նման սոցին անհնարին չարչարանս ածէին անօրէնքն աստեղութեամբք 'ի վերայ վկայիցն նահատակաց. մինչ զի և զմարմինսն 'ի մահուն ոչ ունէր տայինն ժողովել և թաղել. քանզի բազում աւուրս պահապանս կացուցանէին նոցա, մինչև սպառէր մարմինն 'ի գիշակեր գազանացն և 'ի թռչնոց. և կատարեցաւ այն որ գրեալն էր, Թէ Արկին զդիականունս ծառայից քոց կերակուր թռչնոց երկնից, և զմարմինս սրբոց քոց գազանաց երկրի:

Թ. Զինչ դադարեցին աչք իմաստնոց յողորմ և յանգէ արտասուաց 'ի վերայ անհնարին բեկմանս

որ եկն եհաս յերկիրս արեւելից.
զի մարմինք սրբոցն 'ի վերայ լերանց
և ընդ երեսս դաշտաց մեծ անար֊
գանօք վայրավատեալ ցրուէին ։
Կամ ո՞վ իցէ յորդւոց Ադամայ, որ
իբրեւ տեսանիցէ կուր արկեալ
Թռչնոց երկնից և շանց զդիակունս
երանելեացն, և ոչ մեծաձայն բար֊
բառովք առնուցու ողբս 'ի բերան
և աշխարիցէ. կամ ո՞վ իցէ այնչափ
անգութ և անագորոյն որ ոչ արտ֊
միցի ջերմաջերմ արտասուս 'ի վե֊
րայ եկեղեցեաց, որք յառաջ քան
զփոքր մի զարդարեալ էին կենդա֊
նութեամբ իբրեւ զմարմինս, և յետ
սակաւ միոյ գտան անկեալք և կոր֊
ծանեալք յիւրաքանչիւր տեղեաց,
իբրեւ զդիակունս սպանելոց ընդ
երեսս դաշտաց. որք զշքնութիւն և
զխաղաղութիւն զգեցեալ էին և
պսակեալ, և մատնեցան յաւեր
յանկարծակի. և եղեւ մերկ առակ
և կողոպուտ. և փոխանակ ուրա֊
խութեանցն և ցնծութեանցն սգով
և կարեօք զգածան, և յահ և յեր֊
կիւղ խոնարհեցան. որոց բնակու֊

Թիւն սուրբ և պարկեշտ էին, ա-
ղաւնեաց միամտեաց, արդ. եղեն
բոյնք իժից և դադարք վիշապաց։

Վայ մեզ. քանի՜ անհնարին են
չարչարանքս որ եկին հասին յամս
մեր. վայ մեզ, քանի՞ տրտմալից են
կարիքս որ եղեն չուառական ազ-
գիս. ո՞ր սուգ դառնութեան մեծ
իցէ քան զայս, զի եկեղեցիք ա-
ւերեցան և սուրբ սեղանք կործա-
նեցան. պարկեշտ սպասք պաշտա-
մանն մատնեցան 'ի ձեռս պղծոց և
անարժանից. մեզ առաւել էր ա-
սել զքան մարգարէին, Թէ Ո՞վ տա-
նէր զգլուխս մեր ջուր և զաչս մեր
աղբերակունս արտասուաց, և նըս-
տէաք լայաք անդադար զցայգ և զը-
ցերեկ վասն բեկման աշխարհիս և
վասն չարչարանաց ժողովրդեանս,
և վասն ձգանց նեղութեանց, որ
շուրջ պատեալ են զմեւք առ 'ի
խրատ մեղաց մերոց։ Եւ Թէպէտ
ապաւինութիւն մեծասքանչ վասն
հանդերձեալ յուսոյն ընծայեցու-
ցանեն 'ի միտս իմաստնոց նեղու-
Թիւնք անհնարինք, այլ տգիտաց և

ախմնորաց որոգայթ գայթակղու_
թեանն են, և յերկրայ միտս կա_
ցուցանէ զթերահաւատս. այլ քան_
զի յաշխարհ և 'ի բարձրութիւն նո_
րա ելանել եւեթ հայցէին, և զայն
ածէին զմտաւ, թէ ըստ բարձրա_
բերձ բարձրութեանն և ըստ մե_
ծամիտ աշտիճանացն, նոյնպէս մեծ
և անկանելն անհնարին բեկումն.
ըստ այնմ որ ասէ, Անկցին խորտա_
կեսցին և մի կարասցեն կանգնել,
զի զտէր Աստուած բարկացուցին.
և ըստ այնմ, թէ Տեսի զամբարիշտն
վերացեալ բարձրացեալ որպէս ըզ_
մայրսն Լիբանանու, և ապա անցի
և ոչ էր ուրեք, և խնդրեցի և ոչ
գտաւ տեղի նորա: Այսպիսի երկ_
մրտութեամբք և թոյլ կամօք ուրա_
նային բազումք զկեանս և մեռա_
նէին. և սակաւք խոստովանէին ըզ_
կեանս և կէին. քանզի թողին թու_
լամիտքն զմարտն և եղեն փախըս_
տեայք, զի երթիցեն թաքիցեն յան_
երեւոյթ տեղիսն: Առաքինի հո_
վիւք հօտին իւրեւ զգուշանս 'ի մար_
դախոշոշ 'ի զոհականերացն կատարէին.

և փոխանակ ստանանն և հաղին իւ-րեւ զարս ընծայեն և զդրաւորս քա-ջութեամբ պէսպէս մահուք ըստ կամաց ստրկողացն մեռանէին։

Ժ. Դարձեալ երկրորդ հրաման յանօրէն Թագաւորէն վասն քրիստո-նէից և աշխարհականաց ելանէր. ահ և երկիւղ ընդ ամենայն աշխարհս տարածանէր. և շարժումն և գո-գումն յամենայն կողմանս հասա-նէր. և այսպէս ելանէր հրամանն, Թէ Որ արեգական երկիր ոչ պա-գանիցէ և զարիւն անասնոց ոչ կա-միցի ուտել, չարաչարաւ մահու 'ի ձեռաց մերոց գատաւորաց մեռցի։ Իբրեւ զայն լսէին աշխարհականք որք հաւատացեալք՝ Թողուին եղծ զեղծ զտունս իւրաքանչիւր, և ան-ժողով և ընդ վայր զինչս և զստա-ցուածս. քանզի ահ տագնապին ստիպէր և հրաման սպառնալեացն ձեպէր հանէր զնոսա յիւրաքանչիւր տեղւոջէ, երթեալ լինել ապաս-տան 'ի լերինս և յայրս քարա-ծերպս, 'ի սորս և 'ի գարափորս.

ըստ այնմ որ ասէ, թէ փութա
ժողովուրդ իմ մտեալ 'ի շտեմարանս
քո և փակեա զդուրս քո և թաքիր,
մինչև փոքր մի անցցէ բարկութիւն
իմ։ Լաւ համարէին զայրսն նեղա-
մուտս քան զապարանս ընդարձա-
կասրահս, և զդարափորս անձուկս
և զնստուկս՝ քան զբարձրաբերձ
ապաշտկամբսն։ Կորուսին զամենայն
ինչս, զի զճշմարիտն և զյաւիտենա-
կանն գտցեն. և իբրև զպաղտա-
կանս յերեսաց դերէվարացն սար-
սէին և գողային. ոչ 'ի մահուանէ՝
զոր վասն Քրիստոսի մեռանէին՝ և
փախչէին, այլ կասկածէին թէ գու-
ցէ գայթակղութիւն ինչ լինիցի
յանհնարին փորձութիւնսն. ըստ
այնմ, եթէ Ահ մեծ է անկանել 'ի
ձեռս Աստուծոյ կենդանւոյ։ Քան-
զի ոչ ամենայն որ ոսկի կոչի՝ ելանէ
անարատ և ընտիր 'ի բովից, և ոչ
ամենայն որ արծաթ անուանի՝ ելա-
նէ պարզ և սուրբ 'ի հալոցաց։ Ե-
րանի՜ որ այնու բովովք սրբեցին 'ի
ժանկոյ և յաղտոյ աշխարհիս, և լի-
նիցին անօթք սրբութեան՝ սպաս

պաշտամանն աստուածութեանն ։ Երանի՜ այնց որ ըստ օրինակի անասուն և վասն նորա մեռանիցին, և հաստատուցանիցեն զսէրն և զերախտիսն նորա զոր եցոյց առ նոսա պատուականն և ծանրագին արեամբ իւրով. քանզի այսպէս ասաց զհաւատացելոց որ հաւատան ՚ի նա, թէ. Սիրեցի զնոսա որպէս դու Հայր զիս սիրեցեր. և զոր ինչ ետուր ինձ՝ կամիմ թէ ուր եսն իցեմ՝ և նոքա անդ իցեն։ Ո՞վ իցէ այսպէս անէր քաղցր և մարդասէր, որ ըստ իւրում օրինակի կամի հանգուցանել ամենայն իւիք զծառայս իւր. կամ ո՞վ իցէ այսպէս բարերար և մեծագութ, որ առ սեղան իւր կամի բազմեցուցանել զորս գնեաց արեամբն իւրով սրբով, և խոստացաւ բաշխել ինքնին ՚ի վեր հարկանել և պաշտել զնոսա։ Ո՜վ ողորմութիւնք, քանի՜ առատք էք. ո՜վ գութք, քանի՜ ջերմեռանդն էք, որ յօդեցէք զանդամս մեր ՚ի մարմին Տեառնորդւոյն, և խառնեցէք զյօդս մեր ընդ ոսկերս աստուածածին անդրանկանն. փութեցէք զհա-

սակս ընդ հասակի նորա, զի եկեալ է 'ի չափ և լինիցի ըստ մերում պայմանի: Պսակեցէք զգլուխս մեր բարձրացեալ գլխով. ըստ այնմ զոր առաքեալ ասէ, Թէ Գլուխ առն Քրիստոս, և նովաւ շինի և կատարի ամենայն մարմինն յօդիւք ոսկերօք և խաղալեօք միաբանեալ ամենայն 'ի նոյն սիրով:

ԺԱ. Դրան և անհնարին հրամանն սախպեալ հասանէր, և սաստիկ սպառնալիք չարաշունչ դատաւորացն՝ գոչումն յամենեսեան արկանէին. քանզի ամբարիշտքն եբրեւ զբոց խստոյ բորբոքէին, և որդիք կորստեանն ուտէին զմիս հում կենդանեաց, իբրեւ զգազանս գիշակերս սրէին զատամունս: Առեւծն ահագին գոչէր և ելանէր 'ի չորաշուք մորենոյն, որձակել և յափշտակել և բեկանել զեզլինս հարկեացն որոտայր. գայլք ապականիչք յիւրաքանչիւր որջից ելանէին հասանել պատրաստականք ապականել զյորձ պարարտ խաշինն. աղուէսք

Ժանդահոտք յիւրաքանչիւր գագա-
րաց ըղձիւք լինէին զալ կրծել զան-
կեալ ոսկերս խաշանցն ։ Քաջա-
սիրտք և սնգակաղմք՝ պատուի և
պսակի հասանէին . և վատասիրտք
և տագնապեալք կորուսանէին ըղ-
յաղթութիւնն . դասակք դասակք
օդեաց մտանէին խիզախելով , և
պառակք պառակք այծեաց՝ եղա-
նէին սեւացեալ գունով ուրացու-
թեանն . մտանէին սուրբք և սպի-
տակք , և ելանէին աղտեղիք և արիւ-
նոտք . սատանայ և դեւքն խնդային
ընդ անհնարին բեկումն մեր , և
այսք պիղծք ցնծային ընդ կորուստ
ապականութեանն ։

Օձք սուգ զգեցեալ բարկու-
թեամբ շնչէին , և 'ի պարզ յատա-
կութենէն յարամուր և 'ի մրուր և
'ի մրրիկ դառնային . քաղցրաշունչ
հողմն հարաւոյ դառնաշունչ բար-
կութեամբ կագ եդեալ ընդ աշ-
խարհիս մարտնչէր , և հող և մոխիր
ցասմամբ 'ի վերայ անօրինացն և
յետս կացելոցն ցանէր , և յամօթ
և 'ի պատկառանս թշնամեաց արար-

չին հաստարակաց ։ Որոտմունք և անհնարին ճայթմունք առանց անձրեւի և ցօղոյ ղմիմեանս բախէին և գողացուցանէին . ահեղ փայլատակունք յերաշտոց անկանէին 'ի մարգիկ և խարշէին . մուայլ և ծուխ չարատես շփոթեալ՝ ընդ երկինս ընթանայր , և փոխանակ ցօղոյ և անձրեւի փոշի ցասմամբ արկանէր յանդաստանս . ամպք ամուլք և անծինք և անորգիք լինէին . զի ոչ ծնանի և սնուցին և հասուցին 'ի չափ հասկացն զբոյսսն . ըստ այնմ զոր Մովսէսն ասաց , թէ Դարձուցէ տէր Աստուած զանձրեւ երկրի քո 'ի ժանգ . և հող և մոխիր տեղասցէ քեզ յերկնից . եղիցին երկինք 'ի վերայ ձեր պղնձի , և երկիրդ 'ի ներքոյ ձեր երկաթի ։ Զամենայն աչօք մուայլ մածեալ նստէր 'ի սովոյ , և գոյնք ամենեցուն իբրեւ զճականդեղ խարշատեալ յեղեմանէ ։ Մարդք պատուականք առ վտանգի սովոյն զիշոց միս ուտէին . կէսք ըղմիմեանց մարմինս ուտէին և ոչ յագէին . կանայք պատուականք և գը-

Թաքք ընդ խուրեանց ձեան եփէին զմանկունս և ուտէին. և դարձեալ ինքեանք զկնի նոցա մեռանէին չարչարանօք. և կատարեցաւ բանն զոր ասաց Եզեկիէլ, թէ Հարք կերիցեն զորդիս և որդիք զհարս: Դեղք անհունք նուաղեցին, եղեն մօտք յաղաղանել. քաղաքք բազումք թափուր եղեն և աւերեցան. շէնք թափեցան և աւերք բազմացան. բարկութիւն տարածեցաւ և խաղաղութիւն ամփոփեցաւ. լուսին յարիւն դարձաւ, վասն արդար արեանց ողորմագին արտասուօք լայր կականէր. արեգակն 'ի սուգ տրտմութեան եմուտ, և զմէգ և զխաւար իբրև զթուխ զգեցաւ. երկու աստեղք ցոլացեալ ընդ առաւօտս՝ իբրև թէ ընդ մխեանս կռուիցին՝ յայտ առնէին. դայլք անապանեալք իբրև զգողս հնարագէտս զմանկունս 'ի ծոցոյ մարց հանէին և սպանանէին. և կատարեցաւ 'ի մեզ զոր ասացն Երեմիա, թէ Գայլք անապատնեալք կեղեսցեն ըզնոսա. և շունք զզխակունս մարդ-

կան ուտէին 'ի սովոյ՝ և քարշէին ընդ հրապարակս . որպէս և գրեալ է , Թէ Եղիցին գիակունք նոցա անկեալք 'ի հրապարակս յերեսաց սովոյ և սրոյ և մարգամահ օրահասի . և ոչ ոք իցէ որ Թաղիցէ ։ Որդիք հարց վշտատեսաց կոխան փղաց և երիվարաց լինէին . քանզի արքին և նոքա զբաժակ դառնուԹեան , որոց նեղեալ և ճգնեալ գերլին 'ի ճանապարհի , և յօԹեվանս նքողէին 'ի սովոյ և մեռանէին ։

Յայնպիսի ամս չարս և անուղայս , զորոց այլայլեցին զյօրինեալ կարգան մարգիկ անօրէնք , յայնպիսի շըփոԹ և յոյզ ժամանակս՝ զոր շփոԹեաց ազատուԹիւն , արեւելք հպարտացեալ ամբարտաւանէին , արեւմուտք հնազանդեալ խոնարհէին , հիւսիւսի տապաստ անկեալ կոխէր , հարաւ 'ի պարտուԹիւն մատնեալ վատԹարէր ։ Գեւղք աւերէին , քաղաքք կործանէին , ազգք հնազանդէին , աշխարհք վատնէին . սուրն սաստակէր , սովն մաշէր , գերուԹիւն չարչարէր , մահն

սպանանէր, հալածումն քրիստո-
նէից բորբոքէր, նեղութիւնն զօրա-
նայր, գաւազանն սաստկանայր,
խրամ յորդորէր. եկեղեցիք տապա-
լէին, սեղանք կործանէին, սրբու-
թիւնն պղծէր, գիրք պատառէին,
լալումն բազմանայր, հեծութիւնք
յաճախէին, սուգն մթերէր, տրտ-
մութիւնքն թանձրանային, ամբա-
րիշտքն մեծամտէին, անօրէնք պար-
ծէին, թշնամիք ամբարհաւաճէին,
ատելիք բերկրէին, թոյլքն լքա-
նէին, անպիտանքն պարտէին,
քաջքն զօրանային, ժրագլուխքն
առաքինանային. բոցքն բորբոքէին,
ոսկերիչն ձեպէր զտեալ ոսկին ընտա-
րէր, աղտն խոտէր:

ԺԲ. Ընդ այն ամենայն վիշտս որ
անցին ընդ մեզ, և ընդ ամենայն չար-
չարանս որ եկին 'ի վերայ մեր, չիք
ոք որ ամաչեաց և ոչ որ կասեաց 'ի
մեղաց. չիք ոք որ զղջացաւ 'ի մեղաց
և դարձաւ. չիք ոք որ կագի ընդ ա-
գահութեան, և ոչ՝ որ դատ եդեալ
կռուի ընդ ապիրատութեան. չիք

որ ձնչէ զցասումն, և ոչ՝ որ տասաէ 'ի կագ և խռովմանէ. չէք ոք որ ցածուցանէ զհակառակութիւն, և ոչ՝ որ մեղմացուցանէ զատելութիւն: Այլ փոխանակ այսր ամենայնի՝ ապաշխարութիւն նուաղեաց, մեղք բազմացան, սէր շիջաւ և նախանձ բորբոքեցաւ. խաղաղութիւնն ամփոփեցաւ և թշնամութիւն տարածեցաւ. տամք արգելան, ապահութեան սանձք արձակեցան. անօրէնութիւն զօրացաւ և արդարութիւն սպառեցաւ. ակնառութիւն համարձակեցաւ և յանդիմանութիւն կարճեցաւ. մեծատունք ժանիս նոր սրեցին, աղքատք զգող աւազակութիւն ուսան:

Վա՜յ մեզ. զի՞նչ եկ դիպեցաւ մեզ. զի տեսին աչք մեր զպատարագել որբոցն և զմեր ժպրհութիւնս ոչ կամին տեսանել. լուան ականջք մեր զգենումն տռաքինեացն և զմեր ստուգանելս ոչ կամին լսել. անց ամօթ մեր զսահմանաւ, և ել զարտուղի լքութիւնն մեր. մոռացաք զարհաւիրս

սպառնմանցն և զտագնապ մահու՝ որ ոչ երբէք ածաք զմտաւ․ փախեաք 'ի խորատուէ ծերոց և Թաքեաք 'ի գաւաղանէ իմաստնոց․ ընկղմեցաք 'ի ծովս հպարտուԹեան, և հերձաք յալիս չարուԹեանն։ Հա՛ն զմեզ, տէր բազմագուԹ ողորմուԹեամբդ, զի ոչ կամեցաք կալ ինքնակամօք․ դարձո՛ զմեզ տէր մեծողորմ շնորհօքդ, զի ոչ առաք յանձն դառնալ ախորժելով։ Մտին արդարք մեր 'ի դատաստան, և մեք պարտաւորք ընդվայրաստունք շրջիմք․ մտին ճշմարիտքն 'ի կշռամբանս, և մեք սուտ ընդվայր ԹարԹափիմք․ ծիւրեան կրօնաւորքն 'ի բանդս և 'ի կապանս, և մեք փափկասունք և դատարկապորտք սահիմք․ տանջեցան հեզքն անհնարին տանջանօք, և մեք ամբարտաւանք գրգեալք գգուիմք․ Նուաղեցան պահանջողքն 'ի ճգունս սովոյ վտանգի, և մեք որկորեայք պարարեմք զպորտս․ ցամաքեցան լեզուք ուխտաւորացն 'ի ծարաւոյ 'ի հարկէ, և մեք արբեցողք ժայԹքեալք երգիծանիմք․ Նուաղեցան

ոգաւորքն խորգոմն զոր ունէին , և մեք 'ի հանդերձս պատուականս · Ճգնեցան պնդակազմքն 'ի չարչարանս անհնարինս , և մեք լոյծք և մեղկք հանգիստ եւեթ խնդրեմք ։ Մտանեցան իմաստունքն 'ի հարուածս անօրինաց , և մեք անպիտանք և անիմաստք յաճախեմք ըղշատխօսութիւն ։ Չոգան վարդապետք վառեալք ճշմարտութեամբ , մեք կեղծաւորութեամբ ունիմք զաշակերտութիւնն զոր առաք · գնացին ծերք համեստութեամբ նպատակեալք , և մեք խակք և տղայք մնացաք առանց հանճարոյ · մեկնեցան 'ի մէնջ առաջնորդքն մահուամբն զոր մեռան վասն մեր , և մեք որ 'ի նոցա սակս գտաք շնորհս , բնաւ և ոչ զմտաւ ածեմք զնոսա · քարկոծեցան ընդ մեզ հովիւքն քարամբքն , և մեք իւրաքանչիւր զանձինս պարարեմք · մեռան փրկիչքն սրով փոխանակ մեր , և մեք փըրկեալք նոքօք խառն 'ի խուռն զամենայն ուրուք համարիմք զոսկերս նոցա ։ Ոսկերք Ցակոբայ հաւատա-

ցեղոյ խնկեցան և պատուեցան 'ի Յուսիփայ հաւատացեալ որդւոյ իւրոյ․ ոսկերք Յուսիփայ ճշմարտի մեծարեցան և պատուեցան 'ի Մովսեսէ ճշմարիտ ծառայակցէ․ ոսկերք Մովսէսի սրբոյ պատուեցան և ծածկեցան 'ի ձեռն սուրբն Աստուծոյ․ Նոքա վասն զի հաւատացին եղեն հաւատարիմք․ և զի պատուեցին՝ արժանի եղեն պատուելոյ․ և մեք զի ոչ պատուեցաք՝ չեղաք արժանի . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . . . .

ԺԳ․ Եկ տես զմարտիրոսսն զյաւիտենական վաճառականսն, զորոց՝ առհաւատչեայն աղաղակէ Թէ ճըշմարիտք են որ զարիւն անձանց ետուն փոխանակ մարմնոյ։ Ո՛վ մատանի, քանի՞ սուտ ես․ զոր ինչ երեւի՝ այնմ լինիս առ՛հաւատչեայ․ ո՛վ արիւն, քանի՞ ճշմարիտ ես, զի իմիք՝ որ երեւի, լինիս հաւատարիմ․ Յոյս, ասէ, որ երեւի, այն չէ յոյս․ քանզի արհամարհ է երկրաւոր կարասի, զի բազում քանքարաց ար-

ծաթոյ մատանի, 'ի գանգէ միոջէ լե-
նի առհաւատչեայ։ Քանի՜ ճշմա-
րիտ է երկնաւոր մեծութիւնն, զի
յուսով կենաց արքայութեանն՝ ա-
րիւն մարդոյ լինի հաւատարիմ․
Որ կորուսցէ զանձն իւր վասն ա-
նուան իմոյ, գտցէ զնա 'ի կեանսն
յաւիտենից։

Ի ստիպել ալէացն ծովուն՝ ըն-
կղմի նաւ վաճառականի, և 'ի կան-
գնել գայթակղութեանցս աշխար-
հիս՝ վերանայ ընդ նմին նաւն ոգւոց․
ո՜վ ծով, քանի՜ ահագին ես նաւոր-
դաց, որ գիտեն զմահն քո՝ զերկիւղ
թալողաց։ Ո՜վ աշխարհ, քանի՜
կանգնեալ կաս հակառակ իմաստ-
նոց, որ գիտեն զկորուստն զանո-
ղորմ։ Ծո՜վ մարմնահեղձոյց, զմար-
մինն Յունանու ետ արտաքս 'ի խո-
րոցն՝ ողջանդամ․ և ցամա՜ք հոգե-
հեղձոյց, զԿորխ և զԴաթան և զԱ-
բիրոն խաղաղեաց և ծածկեաց։ Ան-
դունդք ծովու ընկղմեն զյայտնի
գանձս մարմնոց․ և պատոյտք ցամա-
քի կորուսանեն զծածուկ գանձս
ոգւոց․ գազանք ծովու ուտեն ըզ-

մարմինս որ չեն ձեռնհաս ոգւոց. դաղանք ցամաքի զմարմինս պատուեն և զոգին տապականեն : Ո՛վ ծով, քանի ահեղ ես խորհրդովքդ և դաղանօք : Ո՛վ ցամաք, քանի՜ դաժան ես ամբարտաւանութեամբ և ամբարշտօք. ո՞վ լիցի վստահ 'ի քեզ ծով, 'ի յուզել ալեացդ և 'ի մրրկեալ զբօսանացդ. ո՞վ հաւատասցէ քեզ աշխարհ՝ 'ի վառել բարկութեանդ և 'ի բորբոքել անօրէնութեանդ : Երանի՜ վկայիցն որ հեղին զարիւնս իւրեանց 'ի բորբոքումնդ քո և շիջաւ, և արկին զմարմինս իւրեանց 'ի տոչորեալ վառումնն՝ և շիջաւ : Երանի՜ սպանելոցն որք մեռան վասն քո Քրիստոս. զի հատուցին քեզ զերախտիսն զոր արարեր, և բարձրաձայն բարբառովք խնդրեն 'ի քէն զկեանս և զարքայութիւն : Երանի՜ ոյք պատարագեցին կենդանւոյն զանձինս իւրեանց և ճեպեցան անցին ընդ բիւր որոգայթիւք աշխարհիս և ապրեցան. զի հանդիսաք և փորձութիւնք աշխարհիս դայթակղութիւնք են ո-

ոտից, որ մարմնաւոր գնացիւք կո_
խեն զհող երկրի. հոգեւորաց 'ի
վեր են գնացք ոտից իւրեանց, և
ոչ դադարեն մինչեւ հասանեն յո_
թեվանս հանգստեան: Երանի՜ ճշ_
մարտից, որ զանձինս դաւանու_
թեամբ մատուցին քեզ Քրիստոս՝
և զարդիւնս հանդերձ բանիւք նուի_
րեցին քեզ ճշմարտութեամբ. զի
բանք որ արդեամբք ոչ կատարեա_
ցին՝ ոչ կարեն հասանել 'ի բաւան_
դակութիւնն: Երանի՜ վկայից քոց
Տեառնորդի, որ խառնեցին զմահ
քո յիւրեանց մահն և դրոշմեցին
զքո խաչդ յանդամս իւրեանց, ջա_
նացան անցանել 'ի քո նախատինսն
անարգանօք իւրեանց. և հաստա_
տել զքո թշնամանսն 'ի չարչա_
րանսն իւրեանց:

ԺԴ. Ո՜վ արծուիք արագա_
թեւք հեռաստանադէտք, սպա_
նեալք ըստ որոյ թռչէր ընդ առաջ.
ահաւադիկ հեծեալ գայ ընդ չորս
կողմն երկնից. և սուրն ազատ որ
եհատ զպարանոցս ձեր՝ ահա ժան_

կոտեալ ապականեալ գնի 'ի գժոխս. և զարիւնն ձեր որ ներկեաւ և չոգաւ, և ոչ երրն երաւաց որ է անկողին նորա, կարէ լուանալ և սրբել զսպանումն ձեր, որով սեւացաւ և եմուտ 'ի հող. և ոչ որդն կենդանի որ է հանդերձ նորա՝ կարէ ապխտակացուցանել. և տապարըն որ քարշեաց զոտս անդամոց ձերոց, ահա անկեալ ընկղմեալ 'ի խռչերս խաւարինս, և չէ ձեռնհաս ելանել և 'ի գործ իւր դառնալ. և դաւազան անօրէն իշխանին՝ որ կայր ստէպ 'ի վերայ և տանջէր, ահա յազաղեալ խորտակեալ կայ 'ի մէջ մայրոյն, և չէ ձեռնհաս միւսանգամ դալարանալ և վերանալ 'ի խրատ: Եւ այսուհետեւ հուրն սպառնացեալ պատրաստ է 'ի հաշել զնա և 'ի մաշել. և 'ի դէպ է լսել նմա անդ զբանն որ ասացաւ, եթէ Այս այր է որ զայրացուցանէր զերկիր ամենայն, շարժէր զթագաւորութիւն և աւերէր զտիեզերս. գերեաց գերեդարձ ոչ առնէր 'ի տունս իւրեանց. և արդ յիջանելս

սորա 'ի դժոխս և 'ի խորս խաւարինս խոնհերաց , հանդերձ յուսով երկիրն ամենայն և ցնծաց ուրախութեամբ անդին , և մայրքն Լիբանանու զուարճացեալ բերկրեցան . զի յորմէ հետէ ննջեաց սա 'ի հող` ոչ ելին 'ի նոսա փայտահատք մայրաւորաց :

Ո՛վ քանի մեծասքանչ է համբերութիւնն ձեր նահատակք , և զարմանալի փառաւորեալ խոստումն ժուժկալութեան ձերոյ առաքինիք . քանզի ունկնդիր եղէք առաքելոյ բանին , թէ համբերութեամբ կարէք կատարել զկամսն Աստուծոյ և առնուլ զպարգևս խոստացեալս . Համբերողք եղերուք , ասէ , խրատու , և իբրև զորդիս ընդունի ըզձեզ Աստուած . զնեղչացն որ նեղեցին զմարմինս ձեր` որդունք ապականեցին զմարմինս նոցա . չարչարողացն որ չարչարեցին զձեզ` ծիւրեան կեանք իւրեանց 'ի տառապանըս . որք զձեր վախճանն կարճեցին , ոչ հասին նոքա յիւրեանց վախճան . որք զձեզ 'ի լուսոյ զրկե-

ցին, ոչ յագեցան և նոքա լուսով. որ զձեր հասակս կարեցին յօդոց, որ է արբուցիչ հասակաց, ահա մաշեալ կան ՚ի դժոխս նոցա ոսկերք. Թող զկորուստն որ հասանելոց է նոցա ՚ի վախճանէ: Որք զձեզն խլեցին ՚ի քաղցր բարունակէն, զի որբասցին շառաւեղք նորա ընդ աշխարհս, խլեցաւ ժանդ որոմն նոցա յերկրէ. և տակաւ կակուղ են շառաւեղք դառնութեան, և ձեր որոմն բարձրացեալ տարածեցաւ կալաւ զվայրս ամենայն, և ընդարձակեցաւ սփռեցաւ ընդ տիեզերս ամենայն. ձգեցաւ յարեւմուտս և եհաս յարեւելս, բարձրացաւ ՚ի հիւսիւսի, հասոյց զուռ իւր ՚ի հարաւ. կերան հեթանոսք ՚ի վայելուչ ողկուզոյն և արբին ՚ի ցանկալի գինոյն և արբեցան, և ուրացան զկուռս սնոտիս. մոռացան զբագինսն և ոչ յիշեցին զմեհեանսն, արհամարհեցին զպատկերսն և անարգեցին ըզդրօշեալսն. Թափեցաւ ՚ի նոցանէ քունն ափշութեան և սկսան այպանել զծփիչ երազն: Ընթացան ու-

րախութեամբ 'ի տունս ձեր , մտօքն երկրպագութեամբ 'ի ժողովս յիշատակաց ձերոց · զի զտէրն ձեր խաչեալ տեսցեն 'ի ձեզ սպանեալսդ · և զմարմինս արքայորդւոյն որ ծածկեցաւ և վերացաւ յերկինս՝ 'ի ձեր երանելի ոսկերսդ նշանակեսցեն , եթէ ուսուցէ զնոցա բժշկութիւնսն և խնդրեսցէք զհաւատս : Այս է ստուեր որ ոչ Թողու զհետ մարմնոյ , և նմանութիւն միաբանեալ ընդ Ճշմարիտ կատարմանն · զի հանդիցէ ակն յերկոսեան՝ 'ի մարդկութեանն և յաստուածութեանն , և յարարածն և յարարիչն , 'ի ծառայութեանն և 'ի տէրութեանն :

ԺԵ · Ո՛վ սէր Ճշմարտից , քանի՜ եինչ արդարակորով և արագաԹեւ եցես , զի ընդ երկինս և ընդ երկիր կաս արքանեակ 'ի միջի · 'ի բարձանց 'ի խորս իջուցանես , և 'ի խորոց 'ի բարձունս կարես հանել · ցուցանես աչօք զազգականութիւնն և զօրութիւնն որ իջանէ ընդ քեզ 'ի Թիկունս 'ի մարտի առաքինեացն ·

ունիս 'ի ձեռին զպսակն յաղթու-
թեան զոր առնլոց էն երանելիքն
յարքայութեանն ։ Ո՜վ ճշմարիտ
սէր, քանի՞ ինչ է արդեւք սէրս և
հաստատուն ճշմարտութիւնն, զի
զչարչարանսն զոր դուք արդեամբք
կրեցէք՝ մեք յականջալուրս չեմք
բաւական լսել. չարչարէիք և կրէիք
նախատինս, վասն զի եղեւ յոյս
ձեր յԱստուած. և զի դաւանեցէք
'ի բանն կենդանի՝ և նովաւ երեւե-
ցայք իբրեւ լուսաւորք 'ի խաւարի.
վասն այնորիկ լինելոց էն ձեզ պար-
ծանք յաւուրն Քրիստոսի. բուռն
հարէք զհաստատուն և զանքակ որ-
մոյն բարձանց, և նա առ վերացոյց
եհան զձեզ յերկինս ։ Արհամար-
հեցէք զանցաւոր իրս աշխարհիս,
որով և թշնամիքն կամէին պատրել.
և 'ի ձեռն մեծաձայն բարբառովք
զայն բան լսէին, թէ Պարգեւքդ ձեզ
լիցին, և զպատիւ տան ձերոյ ում
կամիք տաջիք. զի լաւ համարեցայք
զնախատինսն Քրիստոսի քան զմե-
ծութիւն և զգանձս երկրի. քանզի
հայեցեալ սպասէաք պարգեւացն
հանդերձեալ աշխարհին ։

Դուք էք ազատորդիք վերին ազատութեանն, զոր կամեցան հնազանդել ծառայորդիք ներքին ծառայութեանն. ասէ. Որ զմեղս առնէ, ծառայ է, և վերինն Երուսաղէմ ազատ է. ծառայք են մեղաց՝ որք պաշտեցին և պաշտեն զարարածս. ըստ այնմ, եթէ փոխեցին զճշմարտութիւնն Աստուծոյ և պաշտեցին զարարածս և ոչ զարարիչն: Ելաց արեգակն և եղեւ ամբաստան զնոցանէ. սուգ զգեցաւ լուսին և եմուտ 'ի գաղտ ընդ նոսա. տրտմեցաւ հուր և յաճախեաց նոցա ըսպառնալիս, և յայտ արար զցասումն անկանելով 'ի տեղիս տեղիս. մրմռան ելանեն ջուրք ընկղմել ըզնոսա, և վկայեն հեղեղքն որ չնասեցին ուրեք ուրեք. ըստ այնմ, եթէ Ամենայն արարածք հեծեն և երկնեն մինչեւ ցայժմ: Իսկ 'ի ձեր մարտ պատերազմի զուարճացեալ ցնծային արարածք. զի ոչ խոնարհեցուցէք զգլուխս և մատուցէք նոցա երկրպագութիւն, և ոչ առէք զպաշտօն տեառն և ետուք անխօսիցն:

Ո՜վ վկայք, եղինք վաստակաւորք որ մտէք 'ի հանգիստ յաշխատութենէ հալածանաց, և 'ի բազմապատիկ տոհմականաց լցէք զմտուրս ձեր հոգեւորս, զարթիցէք վայելիցէք յայն յաւիտենական: Վա՜յ անօրինացն որ աշխատեցին զձեզ անողորմ. երթան գտանեն զտանջանս յաւիտենից: Ո՜վ եղինք վաստակաւորք, որ ինքեանք իւրեանց եղեն մշակք և սերմանիչք. սերմանեցէք մահուան ձեռով սերմն յերկիր կենաց, և հեղմամբ արեանն որ արբուցէք, զի տացէ տոհմականս հարիւրաւորս, վաթսնաւորս և երեսնաւորս: Սուգ առ սատանայ, զամօթ զգեցաւ և գառնացաւ. զի ոչ կարաց խառնել զգառն որոմն 'ի սերմն ձեր ընտրեալ:

Ո՜վ սպանեալք տարապարտք և խողխողեալք անարատք, որոց գոչէ սուրբ արիւնն 'ի վերայ բարձանց զարիւնահեղացն՝ իբրեւ զարիւնն Հաբելի որ գոչէր 'ի դաշտին զԿայենէ. եղեն մարմինք ձեր պատարագք սուրբ, որ մատուցայք 'ի

ձեռաց պիղծ քահանայից . եղեն
և բլուրք բարձունք սեղանք բարձ_
րագէղք , օրինակ և նմանութիւն
Գողգոթայի . և եղեւ սեղան կեն_
դանի պատարագին որ պատարա_
գեցաւ 'ի նմա ։ Հոսեցան ձեռք
պղծոց անուշահոտ արեամբն ձե_
րով , որով բուրեաց հոտ անու_
շութեան ընդ աշխարհս ամենայն՝
'ի հաճութիւն այնմ որ ընդունիչ է
պատարագաց ։ Վայ անօրինացն զի
ոչ լուացան քաւիչ ջուրբքն 'ի ներ_
կուածս սուրբ արեանցն , որով
ներկան սուրբ ոգիք և մարմինք նո_
ցա ։ Բղխեաց արիւն ձեր յերկիր և
հեղաւ 'ի քաւութիւն արարածոց ,
և հաստատեցաւ 'ի վկայութիւն
սպանողացն . զոր ոչ անձրեւ ողողել
կարէ և ոչ ցօղ լուանալ . ոչ ձմեռն
ջնջել շող ամպովք , և ոչ ամառն
ցամաքեցուցանել գոլախառն տա_
պով . զոր ոչ գաղան կարէ լիզել , և
ոչ թռչունք ըմպել . ոչ հող ծած_
կել , ոչ երկիր կլզուցանել , ոչ
գարուն հեղհեղել յորդաբուխ
ուղխիւք , ոչ աշուն խաղաղել հո_

զամաղն փոշովք. ոչ վայրք անհետեալ և ոչ ոտք մշակաց թաքուցանել. այլ թերեւս և տեղակալքն կալան զսուրբ մարմինն. զի զիւրաքանչիւր նշանագիր յայտ յանդիման ցուցանեն, և պահեսցի 'ի դատաստան և 'ի հատուցումն վրէժխնդրութեան:

ԺԶ. Ո՛վ արիւն, քանի՛ ողորմագին ես, մանաւանդ զի տարապարտ և յանիրաւի հեղար. յիշեցի զհեղումն անարատ և տագնապեցայ. միտքս յիմարեցան, գոյն երեսացս եղծաւ. գութքն ստիպեն հանել յինէն ջրշիղջս արտասուաց, զի յորդեսցեն և լիցին գետք արտասուաց 'ի մկրտութիւն մեղաց իմոց: Ո՛վ քահանայք քաւիչք արեան և մեղաց այլոց, ո՞վ կարասցէ հատուցանել զպարտս արդարութեանդ ձերոյ. ոչ հատուցանեն զնա ոսկին Սոփիրայ և ոչ արծաթն ընտիր որ գայ 'ի Թարշշայ. ոչ գնէ զնա մարգարիտն Քուշանաց, ոչ քաւեն զնա սուտակն և դահանակն

Եւսեղամթայ , և ոչ զմրուխտն և տպազիոնն որ գայ 'ի Հնդկաց ։ Ո՞չ որդեւք դիտացին արիւնահեղքն , թէ որչափ ծանրագին էր արիւնն , որ արեան ոգոց խորհրդակից իցէ , թէ յընտրեալս անկանիցի՝ մի՛ կարասցեն ապրեցուցանել զնա ։ Վա՛յ նոցա զի չէք ինչ տալ ընդ արեան . բայց եթէ զանձինս գրաւեսցեն արդար դատաստանացն Աստուծոյ , տանջել տանջանօք ըստ հրամանի հրամանատուին . քանի՞ ինչ վրէժս 'ի մէնջ վրիժուց տայցեն տոկոսեօք՝ չեն բաւական որդւոց մարդկան ունել զԹիւ և զհամար . բայց մի միայն գիտէ զԹիւ և զչափ հատուցմանն , որ իւրով մարմնովն առ զչափ արեանն չարչարանաց . Փորձ է , ասէ , ամենայնիւ . մինն միայն գիտէ զկշիռն ուղիղն , որոյ եհան զեղարդն աղբեւր 'ի կողից նորա . և Թերեւս ձեր մահք և զարիւն կանխաւ պահանջիցէ յառաջ քան զարիւն իւրոյ մեծ սպանմանն . Երանի՛ ձեզ , որպիսի՛ դատաւոր ունիք ։ Վա՛յ չարչարողացն զձեզ , զի մինչդեռ ձեր

պաղատեալ, գիտակ է ամենայնի որ զինչ կրեաց յանձն իւր. և 'ի հաստատութիւն ողբոց ճառիս եկեսցէ Եզեկիէլ մարգարէի վկայութիւն, որ քաղցր քնարաւն ողբայր զարգարութիւնն և ասէր. Արկի, ասէ, զարիւնն զողորկաքար վիմաւ և ոչ հեղի յերկիր, զի մի ծածկիցի ընդ հողով. զի հաստատեալ կացցէ 'ի հատուցումն վրէժխնդրութեան։ Եւ Դաւիթ յաղի և յողորմ ողբան Յովնաթանու ասէր զտեղւոյն ուր հեղաւ արիւն նորա, թէ Լերինք Գեղբուայ մի իջցէ 'ի վերայ ձեր անձրեւ և մի ցօղ։ Եւ դարձեալ ասէ, թէ Յիշեաց խնդրել զվրէժ արեան նոցա, և ոչ մոռացաւ զաղաղակ տընանկաց։ Առաքեալ ասէ, թէ Նեղութիւնք և հալածանք զոր կրեցէք վասն անուան նորա, պահեսցի յօրինակ արդար դատաստանին Աստուծոյ։ Եւ յօրէնս գրեալ է, թէ Պահանջեցից զարիւն ձեր 'ի ձեռաց մարդկան և անասնոց և թռչնոց. և վասն արիւնահեղացն այսպէս գըրեալ է, թէ Այր արիւնահեղք և

ննդաւորք մի՛ հասարակեսցեն զա-
ւուրս իւրեանց ։ Եւ Մովսէս ասէ ,
Թէ Երկիր յորում արիւն արդար
հեղցի՝ մի՛ քաւեսցի 'ի նմանեացն ,
մինչեւ հեղցի արիւն այնր որ եհեղ
զարիւնն . և որ հեղուցու , ասէ ,
զարիւն մարդոյ , 'ի ձեռն մարդոյ ,
ասէ , հեղցի արիւն նորա ։ Եւ Թէ-
պէտ արիւնն իբրեւ զամենայն ինչ
ծածկի և լուանայ , այլ Աստուծոյ
յայտնի է և զբողոք ունի , զի խընդ-
րեսցէ զվրէժս . բայց Աստուած
մարդասէր գրոշմեաց 'ի մարգարէն ,
ասէ , Թէ Որպէս անձն հօր իմ է ,
նոյնպէս և անձն որդւոյ , և անձն
որ մեղիցէ , նոյն և մեռցի . և Արդա-
րութիւն արդարոյն , ասէ , 'ի վե-
րայ նորին եղիցի ։ Նոյնպէս և անօ-
րէնք որ կոտորեցին զանմեղսն , ըն-
դունելոց են զվրէժս հատուցմանն ։

Կայէն քուրմ պիղծ , որ առաջին
շաղախեաց զձեռս իւր յարիւն եղ-
բօրն , և արբոյց անոյշ երկրին զանձ-
րեւ անուղայ , եղեւ երերեալ և
տատանեալ 'ի վերայ երկրի զամե-
նայն աւուրս կենաց իւրոց . և Ա-

խայաբ քուրմ պիղծ, որ եսպան զՆաբութ յեզրայելացի, հարու խանարձակ նետիւն, և լափեցին շունք զարիւն նորա 'ի ժառանգութեանն զոր յափշտակեաց յազգն Եզրայելացւոց։ Քուրմքն նզովեալ սպանին զՋաքարիա և զեղբարս նորա զորդիս Յովիդայ քահանայապետի, անիծաւ երկիրն նոցա և աւերեցաւ քաղաքն։ Յովակիմ քուրմ պիղծ, որ սպան զՈւրիա Սեմեանց, անիծաւ և մեռաւ և քարշեցաւ զքարշումն իշոյ, զոր քարշեցին ընկեցին արտաքոյ քան զդրունսն Երուսաղեմի։ Եւ Հերովդէս քուրմ պիղծ, որ սպան զՋաքարիա Բարեքեանց, իբրեւ խնդրէր զորդի նորա սպանանել ընդ մանկտին որ կոտորեաց 'ի Բեդղեհեմ, վաղվաղեցին դժոխք, ամփոփեցին զնա բարկութեամբ. զի մի լիցի արժանի տեսանել զծնեալն և զՓրկիչն հեթանոսաց, հանդերձ այլովք բազմօք զորոց հեղին զարիւն անօրէն ժողովուրդն։ Որոց մինչդեռ հին արիւնն զձեռօք էր, սկսան 'ի

նոր արիւնն . որք զտէրն սպանին , զՅովհաննէս գլխատեցին և զՍտեփաննոս քարկոծեցին , և զՅակովբոս զեղբայրն տեառն սպանին ։ Վա՜յ անիծեալ և անօրէն քրմացն , կատաղեալ ժողովրդեանն որ խանձեալ էին յարիւն արդարոցն . այս է ժառանգութիւն մնասուցն զոր ժառանգեցոյց ժողովուրդն մարդակեր , հեթանոսաց մարդասպանից , և կամեցան ընդ երկոսին բառնալ բնաւին զազգն ճշմարտից ։

ԺԷ . Երանի՜ ձեզ վկայք սպանեալք , զոր արտաքոյ քաղաքաց և գեւղից կոտորէին ըստ օրինակի Փրկչին մերոյ . որպէս գրեալ է առաքեալ , . Թէ և Յիսուս Քրիստոս զի սրբեսցէ զժողովուրդն արեամբն իւրով . արտաքոյ բանակին չարչարեցաւ . և մեք ելցուք առ նա արտաքս քան զբանակն ։ Դուք էք քահանայք քաւիչք անձանց արեամբ մարմնոց ձերոց , և մկրտիչք ոգւոց ջրով գլխոց ձերոց . և որ չէցեն քահանայք , և նոցա իշխանու-

թիւն է լինել քահանայ անձանց արեամբն և սպանմամբն ։ Քանզի առին մարմինք նոցա բուրվառ սըրբութեան և դաւանութիւն իբրև զհոտ խնկոց անուշութեան ՚ի հանդիստ ամենազօրն Աստուծոյ , որ զօրացոյց զնոսա և առաքինեցան . զմահն ձեր մատուցէք Աստուծոյ , և եղեն պատարագք հաճոյ Աստուծոյ ՚ի հոտ անուշից ։ Եւ քանզի պատուական էր արիւնն ձեր և մահն , եղեւ մեծապատիւ մեծարանք ոսկերաց՝ ձերոց , ըստ այնմ որ ասէ , թէ Պատուական է առաջի տեառն մահ սրբոց իւրոց ։ Երանի՛ ձեզ վկայք հաւատարիմք , որ թողէք զամենայն ինչ , զի շահեսջիք զմինն միայն ։ Ո՛վ իմաստունք և խորագէտք , որ եգիք զգանձս ձեր յանձինս ձեր , զի երթիցեն ընդ ձեզ յանկասկած տեղին և մի մնասցեն աստէն յերկրի և ապականեսցին ։ Յանկալի է աշխարհս և քաղցր փափկութեամբ և փառօք , և փութացան հաւատք ձեր անցանել ընդ սա . զի ժառանգեցուսցեն ձեզ

զայլ աշխարհ մեծ և փառաւորեալ
քան զսա . սիրուն են կեանք և ցան-
կութիւն սորա . և ճեպեցաւ սէր
ձեր մերկանալ զսոսա 'ի ձէնջ . զի
զգեցուսցէ ձեզ զնորին նորոգեալ .
պատիր են զբօսանք և փափագանք
ընդ երկար կենաց . ընթացաւ սէր
ձեր հատանել զնա 'ի ձէնջ . զի տա-
ցէ ընդ այնր զանապական , որ առանց
տրտմութեան է և ցաւոց : Այսու-
երիւք աստիճանօք 'ի ներքուստ 'ի
վեր համբարձայք . ըստ այնմ , որ
ասէ , թէ Այս երեք են որ կան և
մնան , հաւատք , յոյս և սէր . և ար-
քօք անցէք ընդ կասկած , կոխեցէք
զխէթ , արհամարհեցէք զերկիւղ ,
հեղձնեցէք զամօթ , քամահեցէք
զմահ , և առ ոչինչ համարեցայք ըզ-
դժոխս . և ուրախութեամբ յուսոյն
զոր եդիք առաջի , հայեցեալ սպա-
սեցէք քաղաքին որ կայ մնայ յաւի-
տեան . որոյ ձեռագէտ և ճարտա-
րապետ ինքն Աստուած է . և այ-
սուհետեւ ոչ էք օտարք և պան-
դուխտք , այլ քաղաքակիցք սրբոց
և ընտանիք Աստուծոյ :

ԺԸ. Արտասցուք զանկիղըն և ըզ-կատարումն ճառիս կարգաւ. զի այժմ դեռ պիտոյ է 'ի նիւթ շինուածոյս. ահաւանիկ քար հաստատել և վէմ դրոշմել. և ձեռն տան ճարտարապետի, զի կարգաւ յօրինեսցէ զնոսա 'ի շինուածին: Բթեցան երկաթքն 'ի հատանել, և նոքա ոչ կասեցան 'ի սրոյն. վատեաց սուրն առ 'ի կտորել, և նոքա ոչ թիւրեցան 'ի ճշմարտութենէն. լքան բազուկք կոտորչացն, և նոքա ոչ յողդողդեցան 'ի ճշմարտութենէն. վաստակեցան ձեռք շինողացն, և նոքա ոչ թողին զյոյսն հանդերձեալ. Թերևս հաւանակիցք այնր վիմի իցեն՝ որ հատաւ առանց ձեռին և հար զմեծ պատկերն և մանրեաց: Եւ որովհետև մարմինք արանց սպանելոց եդան իբրև զվէմն շինուածին, պարտ և պատշաճ է զի և կանայք սուրբք և սպանեալք վասն Քրիստոսի՝ մտցեն. իբրև զվէմս կոփուածոյս 'ի շինուածն. ըստ այնմ զոր առաքեալ

ասէ թէ, Ի Քրիստոս չիք արու և էգ, այլ ամենեքեան մի էք. և որպէս 'ի մկրտութեանն ծառայքն և տէրն մի են, նոյնպէս և առ մարտիրոսութեանն կին և այր երկոքեան գլուխք են։

Այս է ազգ թոյլ խղճաց, որ պնդեցաւ կամօք ըստ պինդ բնութեան արուաց. զորս պարտ է մատուցանել 'ի Ճաւխս 'ի միջավայրս շինուածոյն. քանզի ոչ 'ի սկզբանն մարթ էր դնել, և ոչ 'ի գլուխ շինուածոյն հանել. թէպէտ Եւայ կամեցաւ ժպրհութեամբ յափշտակել զպատիւ առնն 'ի ժամանակի խորհեւ լուաւ թէ աստուածք լինելոց էն, այլ լուաւ անդէն, թէ Այր քո տիրեսցէ քեզ. որպէս առաքեալ ասէ թէ Գլուխ կնոջ այր է. որ մինչդեռ պինդ բնութիւն արանց 'ի տագնապի կայր, նոքա թոյլ երկեւղած բնութեամբն առաքինացեալ նահատակեցան։ Քանզի եղեւ երկնաւոր սէրն խորհեւ զխախոց, և ժողովեալ ած կցեաց զթոյլ լուծութիւնն, և հաստատեցաւ խորհեւ

զադամանդ որ կարծր և հաստ է քան զվէմս ամենայն. յորում ոչինչ գամագատանեն ուժաւորք ամենայն և մրճաւորք: Տեղացին 'ի նոսա նետք նախատանաց, և ոչ ինչ ոչ կարացին ազդել. մերկացին 'ի վերայ նոցա սուրս թշնամեաց, և ոչ կարացին սպանանել. Ձգեցին 'ի նոսա տէգս աղտեղի խորղղամանց, և նոքա ոչ խոցեցան. սպառնացաւ նոցա մահ գաւանաշունչ, և նոքա ոչ զանգիտեցին. պատեցին զնոսա մեղք մարմնոյ, և ոչ կարացին հաւանեցուցանել. գրգռեաց զնոսա մոգութիւնն ըստ որկորեայ բարոյից 'ի կերակուրս, և ոչ թուլացան: Երկեցուցին զնոսա դատաւորքն մեծասաստ սպառնալեօք, և նոքա ոչ դողացին. զարհուրեցուցին զնոսա իշխանք չարալլուկ տանջանօք, և նոքա ոչ խոնարհեցան. մաշեցին զնոսա խաւար բանդիւ և կապանօք, և ոչ վհատեցան միտք նոցա. գաղանացաւ 'ի վերայ նոցա թագաւորութիւնն չարաշուք հրամանօք, և ոչ կարաց պատրել զզօրութիւնս

ուղւոյ նորա ։ Եհաս առ նոսա դա-
տավճիռ մահու , և ոչ կարաց հա-
տանել զդոյն երեսաց նորա ։ Ո՜վ
յօժարութիւն կամաց , ո՜վ կամա-
կարութիւն ազատութեան , ո՜վ իցէ
բուռն քան զքեզ . կամ ո՜վ սաս-
տիկ կամ մեծազօր իբրեւ զքեզ . ո՜վ
է որ քեզ յաղթիցէ , և կամ ո՜վ
հնազանդել և նուաճել զքո մեծ
յաղթութիւնդ կարիցէ . բայց եթէ
դու քեզէն յաղթես և անձամբ
զանձն պատրաստեսցես 'ի պատե-
րազմ 'ի հանգստեանցն , և ըստ ան-
ձին դիւրին շրջելոյ 'ի մարտի քոյոյ
յաղթութեանն ըստ կամաց մարդոյն
վարելոյ ։ Երբեմն 'ի պաշտպանու-
թիւն քոյոյ օգնականութեան զգե-
նուս զզէն ընտրանաւ , զի մի՛ խոր-
հուրդն յառաջադէմ . և երբեմն 'ի
փխաս անձինդ յուլացեալ մերկա-
նաս , կողոպտիս բազում երկբայ
խորհրդովք , յետս ընդդէմ հայ-
եցելովք ըստ օրինակի կնոջն Ղով-
տայ , որ առ զպատուէրն և ոչ պա-
հեաց , և եղեւ արձան աղի ։ Ո՜վ
մեծասքանչ մարտ , զի կանայք ընդ-

արս կռուէին և յաղթէին. Ո՛վ նորանշան պատերազմ, զի էգք ընդ արս կռուէին և առաքինանային ։ Վաստակեցին աշխատեցան արք, և նոքա ոչ թուլացան. լքան և պարտեցան արուք, և նոքա ոչ թողին զյաղթութիւնն և զանուն յաւիտենական ։

Երանի՜ ձեզ վկայք սուրբք որ եղէք կցորդ չարչարանացն Քրիստոսի, և հաղորդք հաւանակիցք մահու սուրբ փեսային, որում կայք 'ի խօսման ։ Չարչարեցայք ընդ նմա, զի ընդ նմին փառաւորեսջիք. ոչ ինչ զանգիտեցէք 'ի թշնամեաց, որոց վախճանն կորուստ է, և ձերն կեանք. զօրացայք պարգեւօքն որ տուան ձեզ. զի ոչ միայն հաւատալով հաւատացէք 'ի Քրիստոս, այլ և չարչարանս եւս կրեցէք վասն նորա. մեռայք քաջալերութեամբ վասն յուսոյ պարգեւացն նորա, և սպանայք ուրախութեամբ վասն սիրոյ երախտեացն նորա. և թերեւս զբանն Երեմիայի երկրորդիցէք հալածչացն, թէ Ա-

մաչեսցեն նոքա և ոչ մեք . և արդա-
րեւ ամաչեսցեն . զի պարտաւորու-
թիւն նոցա ձերով յաղթութեամբն
քարոզեցաւ յամենայն գաւառս ։ Ո՜վ
երջանիկ գաստակազեղք , որ սիրե-
ցէք զսպանութիւն սայրասուր
սրոյն , և մատեայք պատարագ կա-
տարեալ առանց երկմտութեան .
ետուք կաշառ զարիւն պարանո-
ցացդ , զի պահեսցի արիւն կուսու-
թեանդ ձերոյ . ետուք գրաւական
զկեանս մարմնաւորս , զի ապրեցու-
ցէք զկեանս ոգւոց ձերոց . սրբեցէք
զանգամս ձեր մկրտութեամբ ա-
րեանն ձերոյ , զի մարմին արեամբ
սպիտականայ , և անարժան լուա-
նալով սեւանայ ։ Ո՜վ երջանիկ
սուրբք , որ ոչ լծեցայք 'ի լուծ ա-
մուսնութեան . ետուք զպարանոցս
ձեր 'ի վայր ահաւոր անդւոց սպա-
նութեան , զի մի հնազանդեսցին
մարմինք ձեր 'ի գործ երկրին ցաւոց
և մեղաց ։ խոնարհեցուցէք զպարա-
նոցս ձեր ընդ լծով սայրասուր
սրոյն , զի մի խոնարհեսցին անդամք
ձեր ընդ լծով ապականիչ ցանկու-

թեանցն ․ արհամարհեցէք զամօթ արտաքոյ և պսակեցայք, զի մի աղտեղիցիք աղտեղութեամբ պղծոցն 'ի սեննեակս․ տգեղացուցէք զարտաքին գեղ ձեր յաչս տեսողացն, զի գեղեցկասցին ներքին գեղն առաջի ամենագիտին ։

Դուք էիք աղաւնիք միամիտք տաճարասունք, զորս վասն փափուկ մտոյն արկին 'ի վարմ և կալան որսորդք ապականիչք․ դուք էիք ծիծառունք տնասունք, որ ճռուողէիք քաղցրաձայն բարբառովք 'ի տաճարն սրբութեան․ և մտին օձք խարամանիք հանին յիւրաքանչիւր բունոց․ դուք էիք ճնճղուկք չինամուտք ձայնակիցք մարդկան, և հասին վարուժնակք ապականիչք, ցրուեցին յիւրաքանչիւր երամոց ։ Դուք էիք որթք դիեցիկք, որք պարարէիք 'ի սուրբ սեղանոցն կենաց կերակրովն․ եւ առեւծն հալածեաց յիւրաքանչիւր կայենից․ դուք էիք որոջք անմեղք որ արածէիք 'ի խընկաբեր մարգս գրոց զարօտս փափկութեան․ և անկան գայլք չխա-

տանկարք և հանրին վարատեցին 'ի միաբանութենէ խաշանցն ։ Երանի՛ ձեզ սպանեալք կենդանիք և աշխատեալք հանգուցեալք , անկեալ կանգնեալք , հալածեալ դադարեալք , թէ ձեօք նորոգեցաւ Եւայ մայրն ձեր , եկաց մեռեալն որ մեռաւն գառնաշունչ օձին բարբառոյն ։ Բազում կանայք առաքինացան 'ի մարմնաւոր պատերազմունս , այլ ոչ ինչ գիւտեն ձեզ , որ առէք զյաղթութիւնն 'ի հոգեւոր պատերազմէն ։ Յայէլ ընդ գլուխն Սիսարայ անօրինի վարեաց ցից և սպան զնա . Յուդիթ սուրբ՝ զգլուխ Հողոմփեռնի ամբարշտի եհատ սրով . միւս կին առաքինի զգլուխն Աբիմելէքեայ սալանովի ջախջախեաց երկանաքեկ , որով և եսպան . Եսթեր արգար՝ զգլուխն Խամանայ նախանձաւոր բեւեռեաց 'ի խաչի և սպան ։

Նոքա են սպարապետք և զօրագլուխք , հազարաւորք և բիւրաւորք , պատենազէնք սաղաւարտեալք , հմուտք պատերազմաց , հնարագէտք մարտից , կորովիք , ա-

ղեղնաւորք, խանձք արեան մարդկան, մարգակերք, արիւնարբուք, քաղաքաւերք, բերդատապալք, գերիչք, աւերիչք, անմարդիկ. որ զբազում աշխարհս յաղարտ վարեցին, բարձրանձունք հաստակազեղք, երկայնաբարձք, պատենաւորք, սկազունք, զօրաւորք, և անկեալ կործանեցան 'ի կանանց: Ո՞ւր էին արդեւք դունդքն վահանաւորք և վաղրաւորք, տիգաւորք, աշտէաւորք, որ համապազ առաջի ընթանային և ապասունէին: Ո՞ւր էին արդեւք դունդք հեծելոցն և վարելոցն և սպառազէնք նահատակաց, որ միշտ վերջնապահքն տիգակալք էին նոցա 'ի թշնամեաց: Ո՞ւր արդեւք էին նիզակակիցքն և կապարճակիրքն, որ 'ի ժամ իրին և պատերազմին զզէնն և զզարդն վաղվաղակի առ նոսա հասուցանէին՝ յաւուրն չարի և կորստեան. որ եղեն օգնականք 'ի չարաշուք օրհասին, 'ի ժամանակի իբրեւ վատթարեալ կործանեցան ընդ ոտիւք կանանց. զի ոչ զօրութեամբ յամենակարողն

Աստուած պարծէին , այլ հպարտացեալ յիւրեանց անձանց զօրութիւն . և կատարեցաւ 'ի վերայ նոցա բանն Երեմիայի մարգարէի , թէ Մի' պարծեսցի մեծն 'ի մեծութիւն իւր , և մի հզօրն 'ի զօրութիւն իւր . այլ որ պարծելոցն է յայն պարծեսցի , առ իմանալ և ճանաչել թէ ես եմ տէր Աստուած :

ԺԹ . Յաղթեցին կանայք երբէք , և մատնեցան արք 'ի պարտութիւն որպէս և ցուցաք : Թէպէտ և մեծ է յաղթութիւն առաքինի կանանցն առաջնոց , այլ զի՞նչ զուգութիւն է ընդ առաքինի վերջնոցս , որ յաղթեցին անհնարին պատերազմաց . զի նոքա 'ի կեանս իւրեանց նահատակեցան , և սոքա 'ի մահս . նոքա ազնուականք սնեալք 'ի մէջ ընտիր արանց , և սոքա կոյսք ցածունք սեռնեկամուտք . զորս և տեսիլն անգամ արանց՝ իբրեւ զվայրենի գազանաց զարհուրեցուցանէր : Եւ դառն ցասմամբն դատաւորացն զխրոխտ անմեղացն քեկա-

նէր . ուր մեծաստատ սպառնալիք ամպարշտացն էին , և անարգանք և բամբասանք 'ի պէղծ բերանոցն ելանէին . և պատիւք և հրապոյրք յամենայն կողմանց յաճախէին . որոց հարքն յետս կացեալ էին և ազգատոհմին 'ի փետս մատեալ , գայթակղութիւն յօժարեցուցանէին . ուր տագնապ մահուն էր և շողիւն սուսերացն . գանք սախպէին , տանջանք յորդէին , նեղութիւնք բազմանային , չարչարանքն լլկէին , և մահն զոգիսն 'ի մարմնոցն կիզէր . և յամենայն ձգունս զօրաւորք և պնդակազմք գտան զօրութեամբ տեառն որ զօրացոյցն զնոսա . առ որ զաչս սրտից համբարձեալ էին , և ճշմարիտ սիրոյն նորա քաջալերեալ կային 'ի պատերազմին . ուր ոչ օգնականք և ոչ թիկունք , ոչ խրախոյսք և ոչ քաջալերութիւնք , ոչ սփոփանք և ոչ մխիթարութիւնք : Ոչ որ ընդ բարիսն խնդայր , և ոչ որ ընդ առաքինութիւնսն ցնծայր , ոչ որ 'ի մարտ յորդորէր , և ոչ որ 'ի համբերութիւն յօժարեցուցանէր .

ոչ հայել ընդ ոք և զօրանալ և տեսանել և սրտապնդել յայնպիսի ահաւոր տեղւոջ։

Ցայնպիսի չարաշուք դրան ուրախութեամբ սրտիցն ասէին համարձակաբան, թէ Տէր է մեր օգնական և մի երկիցուք, զի՞ արասցէ մեզ մարդ. Քրիստոս է մեր զօրավիգն, և մեք տեսցուք 'ի թշնամիս մեր. Բարի է յուսալ 'ի տէր՝ քան յուսալ 'ի մարդիկ. Ամենայն ազինք պաշարեցին զմեզ, և անուամբ տեառն սատակեսցուք զնոսա. Շրջեցան զմեւք իբրեւ զմեղուս, և անուամբ տեառն շիջուսցուք զնոսա իբրեւ զհուր խոտոյ։ Քանզի սիրելի և խաղաղարար է անուն քո Յիսուս, մանաւանդ և յայնպիսումն վայրի. այլ թէպէտ գնասցուք 'ի մէջ երկրի և ոչ երկիցուք. զի դու ուղղեկից ես մեր, և ոչ թողուս զերկիւղածս քո և զապաւինեալս։ Այժմ տէր պահեա զմեզ 'ի բանակէ պղծոց, 'ի ձեռաց շանց արիւնարբուաց որ շուրջ պատեալ պաշարեալ են զմեւք. տուր 'ի բերանս մեր զանէծս արգիւն_

տարարս · զի ցայժմ օրհնութեանց սովոր էին լեզուք մեր · անգասցեն շրթունք մեր 'ի նոսա երբեւ զնետս՝ զանէծս · փոխանակ զի ոչ իմացան տանել զքաղցրութիւն և սիրեցին զանէծս և ոչ կամեցան զօրհնութիւնսն : Քաւեա տէր զթագն արեւելից, և տուր նմա իմանալ ըզճշմարիտ գիտութիւն քո · կատարեսցէ երբեւ զքորէշ զկամս քո · կեցո տէր զքորէշ 'ի տեղի քորէշի, և հատո բարկութիւն և չարութիւն մոլորեցուցչացն եւթնպատիկ 'ի ծոց նոցա, զնախատինս զոր նախատեցին 'ի քեզ տէր · հանցէ սատուգութիւնդ քո ընդ ըռընդունս նոցա բորբոքեալ բոցով զամենայն շարաւ ճարպոյն, զոր 'ի պատճառ հրոյն ունեն և շուայտին : Տեղասցեն 'ի վերայ ամպք, հուր և ծըծումբ, զի աղտեղեցին զերկիր և պղծեցին զարարածս · կործանեա զբանակն օտարոտի որ պաշարեալ պահէ զմեզ, և երեւեցո ծառայից քոց զսուրբ բանակ քոյոյ մեծութեանդ · զի յերեւել խաղաղ-

արարին՝ բարձցի չարաշուք տեսիլ չարատեսին. զի բանակք հրեշտակաց քոց շուրջ զերկիւղածովք քովք, և պահես զնոսա: Առաքեա հրեշտակ զօրացուցիչ յանհնարին մարտ պատերազմիս, որպէս առաքեցեր 'ի Թիկունս Յուդայի Մակաբէի հրեշտակ հեծեալ 'ի ձի սպիտակ և զարդարեալ 'ի զարդ ոսկի. տեսցէ բանակ ամբարտաւանին և անկեալ կործանեսցին որպէս գունդն Յուդայի մատնչի, որ տեսին զփառս քո և յետս յետս չոգան և զարկան զգետնի: Լուր մեզ տէր 'ի ժամանակի նեղութեանս, և զօրացո մեծազօր զօրութեամբդ քո զլթոյլ և զծոյլ ազգն Եւայի. սատակեսցին աներեւոյթ սրովդ, որպէս սատակեցան թշնամիք քո 'ի հասանել Դեբովրայ 'ի պատերազմ, որպէս նայն անէծ և կատարեցաւ արգեամբք: Ասասցուք և մեք, թէ Անէծ զնոսա և նզովեա. և ելցեն անիծիւք 'ի ժառանգութենէ քումմէ յերկնից: Տունք նոցա վայիւք և աղաղակաւ անդրանկաց նոցա իբ-

րեւ Ախտաբուն Աբիրամու. և կանգնեցին զդրունան գուժիւ և աշխարանօք կարելոյն իբրեւ զորդին Ամրեայ Մոքորաւ: Մերկասցի սուր սուսերի քո իբրեւ զփայլակն, և պատառեսցէ զառագասա սրտից նոցա. և ելցէ Ճարպն յուռուցեալ և 'ի տնապղեալ ընդերացն, որ ուտէին զընտիրս պարարտաց: Հերձցին պղծալից որովայնք նոցա աներկեւոյթ գեղարդեամբն Փենեէսի, որ խոցեաց զպոռնիկս՝ նոցա նմանիս. եղիցին ցուրտ դիակունք 'ի հեռաց զուարթնոց քոց, իբրեւ զբազում բիւրսն Սենեքերիմայ որ կոտորեաց հրեշտակն: Արբեցո զնետս քո յարենէ նոցա, և կերիցէ սուր 'ի մարմնոց բարձրաբերձ հսասակացն. ած 'ի վերայ նոցա չարիս և սատակեսցին յայսոց պղծոց. սպառեա զնոսա յարեւելից. տագնապեա մահու 'ի ձեռն Ճշմարտից քոց, որպէս սպառեցեր զյամառոտսն Եգիպտացւոց 'ի ձեռն Մովսեսի և Ահարոնի: Անկցին դիակունք նոցա կուր Թռչնոց երկնից, և մի ոք գտցէ

որ ժողովեսցէ. կորո զնոսա յերկրէն կենդանեաց, և մի գտցի յիշատակ, և ծանիցեն թէ Աստուած տիրէ երկրի և ամենայն բնակչաց նորա:

Արա շինութիւն աշխարհիս յետ մեր և ած զխաղաղութիւն 'ի վերայ կողմանցս 'ի դառնալ մեր առ քեզ: Հաշտեա տէր արեամբ ծառայից քոց, և թող մնացուածս աւերեալ ժողովրդեան քում. եղիցի քեզ տէր հաճութիւն պատարագել աղախնացն քոց, և դարձո զորբութիւն 'ի ժողովուրդն: Գթա տէր 'ի մահն զոր մեռան սուրբքն վասն քո, և նորոգեա զօրութիւնն յեկեղեցիս, աղաչեմք: Տէր խնայեա և շինեա զաւերականն և կանգնեա զկործանուածն տաճարին, ուղղեա զսեղանս տապալեալս, և զքահանայսն հալածականս, և զուխտն ցրուեալ: Ընկալ զմարմինս ծառայից քոց սրբութեամբ, և զոգիս մեր պարկեշտութեամբ և պատուով:

Քեզ տէր յանձն առնեմք զկեանս մեր, որ քո մահուն յայտնեցան, և

քեզ մատուցանեմք զմահս մեր, որ քո յարութեամբդ ծածկեցան. քեւ պատարագեմք զանգամս մեր, որ քեւ քաւեցան յանիծից. ոչ զի տացուք պարգեւս՝ ժամիմք գալ առ քեզ, այլ զի առցուք զերեսս քո աղաչեմք զտանել: Նմանեցուցանեմք զմահս մեր քում մահուն և զչարչարանս մեր չարչարանացն քոց, և զարիւնս մեր արեանն որ բղխեաց 'ի կողեցդ. ուստի և կամեցաք հեղուլ զարիւնս մեր սուրբն անօրէն յօգտակար մեզ: Եթէ զկողս խոցեսցէ՝ քում կողին որ խոցեցաւ գեղարդեամբ՝ նմանեմք. քանզի կող եմք մեք Ադամայ առաջնոյ՝ որ ած զնա 'ի մեղս և 'ի ցաւս. առեր դու տէր վէր 'ի կողսդ, եւ անտի ջուր և արիւն, և լուացին զԵւայ որ սեւացաւն 'ի մեղս: Եթէ զպարանոցս մեր ապականեսցէ սուրն, Յովհաննու կարապետին քում նմանեմք. և եթէ քարամբք քարկոծեսցին մարմինք մեր, Ստեփաննոսի առաջին վկային քում նմանեմք. և եթէ գլխիվայր կախեա-

ցուք զփայտէ, Պետրոսի գլխայն ա-
շակերտացն քոց նմանեմք. և եթէ
պրկեսցին 'ի գանս մկանունք մեր,
Պաւղոսի առաքելոյն քում նմա-
նեմք. և եթէ գաղանս առաքեսցեն
'ի մեզ յառաւկումն՝ իբրև զԹեկղ
զճշմարիտ աղախինն քո ապրես-
ցուք, և ասասցուք ուրախութեամբ
սրտիւք ամենեքեան, թէ Յաղթե-
ցաք աշխարհի, թէպէտ և դու միայն
իցես յաղթող 'ի պատերազմի: Բա-
րիոք փախչիմք 'ի վնասալից բարկու-
թենէս. զի յամենայն կողմանց դա-
րանամուտք մտեալ սպասեն կորու-
սանել. որ լի դայթակղութեամբքս
է, և պատիր մեքենայիւքս՝ ընչիւք
և ցանկութեամբք. ըստ այնմ զոր
առաքեալ ասէ. Ո՞վ ապրեցուսցէ
զմեզ յաշխարհէ աստի չարէ. այլ
շնորհքն Աստուծոյ որ զօրացոյց ըզ-
մեզ 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի:
Ոչ եթէ արարածք Աստուծոյ չար
ինչ են բնութեամբ, այլ հաստա-
տութեանն փոփոխեն 'ի պէսպէս
չարութիւնս: Ետես, ասէ, Աս-
տուած զամենայն զոր արար, և ա-

հա բարի են յոյժ ։ Ոչ վասն չարութեան ինչ արարածոցն փութամք ելանել յաշխարհէ, այլ վասն չնակատարելեացն որ ծարաւի են անձանց մերոց. սիրեն զկեանս, Թէպէտ և ժամանակեան են և վախճանելոց ։ Եւ արդ զինչ նեղեցին զմեզ նեղիչք վասն քո և հասուցին մինչ 'ի չարչարանս քո ։ Լեր պաշտպան, լեր պաշտպան Յիսուս օծեալ Աստուծոյ. փութա առ մեզ, փութա առ մեզ կենարար, որ կեցուցեր զԵւայ և զծնունդս նորա. օգնեա մեզ, օգնեա մեզ Փրկիչ, որ փրկեցեր զազգս մարդկան 'ի տագնապ ժամանակին. զի համբերեսցուք չարաշուք մահուցն, և իջցուք, հանգիցուք և յարիցուք, լիցուք արժանի զքեզ տեսանել ։

Ի. Եւ զայս ամենայն նեղութիւնս զոր կրեցին վկայքն, և զայս ամենայն չարաչար տանջանս զոր տանջեցան 'ի զօրաւոր արանց և 'ի սաստիկ իշխանաց. զհեղձամղձուկն 'ի գուբս և 'ի բանդս լինել, և զհա-

շուշան և զմաշուշան 'ի շղթայիցն ծանրութեան · զքաղցն և զծարաւն , զցուրտն և զտօթն , զվիշտն և զտառապանսն՝ հանգիստ և ուրախութիւն համարէին ։ Եւ մեծաձայն բարբառով առաջի ամենեցուն քարոզէին զհաւատսն , թէ միայն տէր է մեր Յիսուս Քրիստոս , որ վասն նորա սիրոյն կրեմք զայսպիսի չարչարանս · զի փառաւորեսցի անուն նորա պատմամբս մերով , և 'ի մահու և 'ի կեանս մեր · զի մեր կեանք Քրիստոս է որ խաչեցաւն , և մեք վասն նորա փութամք մեռանել ։

Յայնժամ պիղծքն և անօրէնքն որ կային շուրջ զնոքօք իբրեւ զդեւս ապականիչս սկսան անողորմ չարչարանօք ազգի ազգի մահուք տանջել զկանայսն երանելիս · զկիսոցն զբազուկս ուսովք չափ քարշէին · զկիսոցն զկողսն խոցէին , զկիսոցն զորովայնս հարկանէին , և թափ 'ի մանկունսն հանէին զուսերն · ըզկէսն քարամբք ծեծէին · զկիսոցն զաչսն փորէին · զկիսոցն զունչս և

զականջս և զքթունս հատանէին , և անդէն 'ի բերան բանաբար տանջանաթափ հարուածովք ամանային : Եւ այսպիսի չարաչուք չարչարանօք բանտային զկեանս առաքինեացն յերկրէ : Եւ քանզի նոքա 'ի ճշմարիտ հաւատան սնանէին , առ չարութեանն դառնաշունչ բարկութեանն , անդէն առաջի աչաց մարցն կոտորէին , և զարիւն մանկտոյն արկանէին ընդ բերանս մարցն : Եւ ըզկիսոց սղոցօք սղոցէին զմէջն և կըտրէին , և ընկենուին աստի և անտի ճանապարհաց , և զօրքն ամենայն ընդ մէջ անցանէին : Քանզի կախարդութեամբ զպարտէին զնոսա մոգքն պղծալիցք . քանզի ոչ առին յանձն հնազանդել չարաւալից ցանկութեանց ժանդից : Նման է զըրպարտութիւն նոցա Շուշանայ զըրպարտութեանն . դատեա զնոսա ծեր ըստ դատաստանացն զըպարտութեանն Շուշանայ : Նման է կտրել անդամոց առաքինեացն զոր ընկեցին աստի անտի զճանապարհաւն , հարճին Ղեւտացւոյ զոր

կորեցին ընկեցին 'ի սահմանս Իս-րայելի : Ա՛ռ 'ի նոցանէ առեր վրէժս յաւուրն բարկութեան , որպէս ա-ռեր վրէժս 'ի Գաբաայ Բենիամինի սրով և արեամբ . մի՛ զատանիցի նոցա որ ելանիցէ և մտանիցէ . այլ ամե-նեքեան առ հասարակ անկցին սրով սաստիկ ստուգութեանն :

ԻԱ. Ո՞վ անհնարին բեկումն ա-րեւելից , ո՞վ ոք իցէ որ բժշկիցէ . կամ ո՞վ այն որ դիցէ դեղ և պա-տեսցէ . բայց եթէ աջ արարչին , որ վերստին նորոգեսցէ զքեզ : Մեւս անգամ առցուք սուգ յանձինս , և սգասցուք 'ի վերայ դառն անօրէ-նութեան որ պաշտեցաւ 'ի դարուս մերում . և 'ի վերայ անհնարին ամ-պարշտութեան որ գործեցաւ՝ յաշ-խարհիս : Իցէ՞ արդեւք թէ սրբեսցէ և լուանայցէ . Ջրհեղեղն ապխտանա-ցու է որ լուանայցէ զերկիր . և ա-հա ուխտն սուրբ և աղեղն յայտնի է , և ոչ տայ թոյլ լուանալ : Իցէ՞ տէր հուր՝ վասն որոյ ոչն երդուար , և սրբեսցէ այրմամբ զգործելիս ա-

նորէնութեանն. վասն այնորիկ զի ընդերկարեաց և խորասան, և զի յաճախեաց ամբարշտութիւնն. բազմացան ամք թշնամեացն. զի չիք սէր 'ի ժամանակիս. վասն այնորիկ չեղեւ մահ սպանողին. զի հաստատուն է նախանձ յաւուրս մեր, վասն այնորիկ առողջ է մարմին հալածչին ։ Մեք 'ի ցաւս մեղացն հաչիմք, և նա 'ի փափկութեան յամբարտաւանութեանն պարտի. զի ոչ յարեաք մեք 'ի հիւանդութենէ անօրէնութեանն, վասն այնորիկ ոչ անկաւ ախտ ջերմութեանն. և զի ոչ տուաք զանձինս յապաշխարութիւն, վասն այնորիկ ոչ մատնեցաւ նա 'ի ձեռս բժշկի առ 'ի պատառել. զի ոչ ընթացաք 'ի դուռն կենաց ապաւինեալ, վասն այնորիկ ոչ ընթացաւ զհետ նորա մահաբեր հրեշտակն սպանանել։ Թերևս 'ի վերայ մեր կատարեցաւ բանն Երեմիայի, թէ Ողբացէք 'ի վ՚րայ դստեր Սիովնի. զի ձայն գուժի դառնութեան դստեր ժողովրդեան իմոյ լսելի եղեւ, որ ասէին, թէ անցին հունձք և պա-

կասեցին կութք, և մեք ոչ փրկե-
ցաք: Դեղք ո՞չ գուցեն 'ի Գաղաադ,
կամ բժիշկ ոչ գտանիցի. իսկ ըն-
դէ՞ր ոչ եղեւ բժշկութիւն հարուա-
ծոցն նորա. և մեք ասացուք թէ
արմատք ոչ գոյին քեզ 'ի դաշտս,
կամ հանդերձք սպեղանեաց 'ի լե-
րինս. պակասեցի՞ն արդեւք դեղք
բժշկաց, թէ ոչ գտան պատանք
իմաստնոց. զի ոչ կարացին բժշկել
զվէրս մեր, և ոչ պատել և ողջացու-
ցանել զբեկումն: Ի մէնջ են հան-
դերձանք դեղոց, 'ի մէնջ են պա-
տանք ցաւոցն. նորա են ողորմու-
թիւնք առ 'ի բժշկել. նորա է ու-
նել զձեռանէ և յարուցանել իբրեւ
զանդամալոյծն քառասնամեայ զոր
յարոյց 'ի մահճացն:

Ո՞վ սայրասուր սուր հալածչին,
ո՞չ արդեւք ընուցուս արեամբ սըր-
բոցն և ամփոփեսցես 'ի պատեանսն.
ո՞վ սուսեր մերկացեալ, ո՞չ յագիս
մսով ծառայիցն Աստուծոյ և դառ-
նայցես անդրէն 'ի տեղի: Սուրն
ասէ. Դարձեալ ծարաւի եմ, նա և
այլ եւս ըմպելոց եմ. և վասն զի

դուք զմիմեանց արիւն միշտ ըմպէք ։ Երանի՛ այնոցիկ որ ոչ արբին ՚ի սմանէ, վա՛յ մեզ զի մեք արբաք և զայլս ՚ի չարս յօժարեցուցաք ։ Սուրն ասէ, թէ Քաղցեալ եմ ուտել, նա և այլ եւս ուտելոյ եմ. զի դուք հանապազ ուտէք զմարմինս ընկերաց անյագաբար ։ Երանի՛ այնոցիկ որ ոչ կերան և ոչ եկեր զնոսա ։ Վա՛յ մեզ զի մեք որ ագահեցաք կերաք և դարձուցաք, մինչեւ դարձցին իրաւունք յարդարութիւն, ընկալցին զնա ամենեքեան ոյք ուղիղ են սրտիւք. և Եսայի ասէ, թէ Յառաջ քան զչարն ժողովեսցի բարին, և բնակեսցին հանգստեամբ. և Յովսիա ասէ, թէ Ես ժողովեմ ըզքեզ առ հարսն քո, և ահա նախանձելի սրով սպանաւ. և դարձեալ գրեալ է, թէ Ընդէ՞ր հայիս և լռեա կաս, ըստ այնմ, թէ Կորուսանէ անօրէն զարդարն ։

ԻԲ. Եկեսցէ տէր գթութիւն քո յօգնութիւն մեզ, տարածեսցին թեւք ողորմութեան քո և լցին

մեզ պաշտպան. բարի ես Տէր որք կարդան առ քեզ, և քաղցր առ ա-մենեսեան որք յուսան 'ի քեզ: Բժշկեա զբեկումն սրտից մերոց և պատեա զվէրս մեր, և առաքեա ա-ռողջութիւն ամենայն ցաւոց մե-րոց. զի ոչ իսպառ բարկանաս, և ոչ յաւիտեան պահես ոխս. չիք տեղի կալ ցասման, յորժամ ա-ռաք 'ի քէն Թողութիւն. և ոչ ա-գանել և երկիկանալ քինի և նախան-ձու: Եւ մեք 'ի հասանել շնորհացդ և բերկրեալ ընդ գալ պարգևացդ՝ կանգնեսցուք և մի անկցուք, կեց-ցուք և մի մեռցուք, և ասասցուք, Թէ Մեռան մեղք մեր և անցին ամք յորս տեսաք չարչարանս, և գնա-ցին 'ի մէնջ ցաւքն, և աւուրքն յորս տեսաք զտառապանս. վախճանե-ցաւ հալածումն, և աւուրքն յորս տեսաք զնեղութիւնս. վերացաւ խրատն և ժամն՝ յորս կրեցաք ըղ-ձգութիւն. մեկնեցաւ տրտմութիւնն և ժամանակքն՝ յորում համբե-րէաք հեծութեանցն. հեռացան տանջանքն և գաւազանն որով տան-

ջէաքն . վառեաց սուրն և պէսպէս մահքն՝ որով մեռանէաք ։

Խնայեա տէր խնայեա 'ի սրբութիւնն՝ որ պղծեցին հեթանոսք . վասն որոյ հառաչեմք հառաչանօք և կործանեալ նստիմք . դարձո զմեզ տէր և դարձցուք առ քեզ . նորոգեա զաւուրս մեր որպէս յառաջագոյնն . զի բարկացար մեզ և ընդ վայր հարեր , եկն եհաս 'ի վերայ մեր վախճան . ժամանեաց 'ի վերայ մեր օրհասն , հասին 'ի վերայ մեր արհաւիրք . Ճեպէ՛ն վրէժխնդրութիւնք . արագունք քան զարծուիս էին հալածիչքն մեր . 'ի ներքուստ հալածեցին և արտաքոյ եղեն դարանակալք . հանին 'ի շինէ , մերկացին 'ի խաղաղութենէ , փախուցին 'ի բնակութենէ , ցրուեցին 'ի մարդաձայնէ մարդկութեան . մեկնեցին յեղբարց , մերժեցին 'ի հարց , հեռացուցին յայգաստանէ ։ Զոր խնդութեամբ ընկալայք յորդորմամբ բազմապատիկ վարձուցն խոստացելոց , յասել , թէ Տացէ ձեզ եղբարս և քորս և մարս հալածանօք հանդերձ ։

Քննեսցուք զճանապարհս մեր, տեսցուք, զի լցան գայթակղութեամբ փշաբերք, խոտակեցք, անկոխք և անարահետք. անդ արհաւիրք բարկութեան և կասկած և երկեւղ 'ի թշնամեաց. և չիք խաղաղութիւն ամենայն որ մտանէ և որ ելանէ։ Զանգեալ գտաք 'ի մեղս, թաթաւեալք 'ի չարիս, մերժեալք 'ի միաբանութենէ, հեռացեալք 'ի հաւատարութենէ. անսուրբք, անողորմք, անագորոյնք. և ոչ կամեցաք հայել ամենեւին յիրաւունս դատաստանացն Աստուծոյ։

ԻԳ. Օն առեալ սրբեցէք զանձինս ձեր 'ի պղծութենէ, և զմիտս և զխորհուրդս և զոգիս 'ի չարաչար խորհրդոց. տարածեսցուք զանձինս առաջի մարդասիրին Աստուծոյ, զի առաքեսցէ քաւութիւն և լուասցէ յաղտոյն ցանկութեանց, և 'ի ծխոյ և 'ի շարաւոյ որկորստութեանն։ Չիք մեզ պահողք և ոչ կրօնաւորք, որ կան 'ի Ճշմարիտն ուխտի. ամենայն ինչ ըստ աչաց է

և վասն պարծանաց՝ պահք և ա-
ղօթք . ոչ՝ զիարդ պահեցից և հա-
ճեցուցից զանէրն, այլ զիարդ պահե-
ցից և գովեցայց 'ի մարդկանէ ։ Եւ
կէսք բնաւ և յիշեն իսկ ոչ զպահս,
զեղխեալք շուայտեալք 'ի կերա-
կրոց, յիմարեալք և ախշեալք յար-
բեցութենէ, որ սոսկան պէսպէս
ցաւս 'ի գինոյ ։ Աւաղ լինի մարմին
պահողաց և անարատ և անցաւ ան-
դամք աշխարհականաց . և գինի զմիտս
յիմարեցուցանէ ։ Եղաք կերակուրք
անխտիր կերակրովք, և արիւն ըմ-
պելի վասն անառակ արբեցու-
թեան ։ Գունով են մարմինք ընդա-
կերաց, և յատակ միոջ՝ Ջրարբուաց,
իբրեւ զմիտս Դանիելի և ընկերացն
'ի Բաբելոնի ։ Ամենայն իրօք դառ-
նացուցաք, և դարձեալ Աստուծոյ
եւս մեղ դնեմք, թէ ընդէր ոչ
լուաւ 'ի նեղութեան, և ոչ եւ
յայց ժողովրդեան իւրում . զայն
ոչ իմանամք, եթէ մեք եմք պատ-
ճառք չլսելոյ, և վասն մեր մեղաց
չարչարեցան սուրբքն ։

Արդ աղէ կարդասցուք միաբա-

նութեամբ՝ ոչ միայն բարբառովք, այլ սրտից և ոգւոցն աղաղակաւ. տրտմեսցուք, լաւ թէ չլաւ. աւացուք զպաղատանս 'ի բերան և ասասցուք, թէ Հայեաց տէր յուխտ քո և տրա շինութիւն կործանեալ եկեղեցւոյս, ուղղեա զսեղան սրբութեան. ժողովեա զցանեալս և զցրուեալս, ցնծասցեն սիրտք նոցա ընդ կանգնել տեղեացն սրբոց, և զուարճասցին միտք իւրեանց ընդ բարձրանալ տաճարացն. լուսաւորեսցին աչք նոցա զարդուք շքեղ սպասուցն: Զի յայսմ անհնարին խռովութեան՝ դարձան 'ի սուգ ուրախութիւնքն. հատաւ ձայն օրհնութեանց 'ի բերանոյ երիտասարդաց և կուսանաց. եղծան տղայք մեծարոյք, որ նստէին ծերքն պատուականք՝ 'ի սուգ և յամօթ, հինօրեայքն հեծեն հառաչեն, և կարօտանային, թէ երբ իցէ զի տեսանիցեն շինեալ և կանգնեալ ըղսուրբ տեղիսն. լան, ողբան, և աշխարեն, թէ զիարդ մատնեցաւ ժառանգութիւն նոցա օտարաց, և

բնակութեանն տեղի 'ի ձեռս թշնա-
մեաց ։

Դու տէր կենդանի ես և մշտըն-
ջենաւոր, և մեք այսպէս ընդվայր
հարեալ թարթափիմք. աթոռ քո
հաստատեալ է ազգէ յազգ. և ըզ-
մեզ այսպէս 'ի ձեռաց թողեր ։ Յի-
շեա զմեզ, տէր, և մի մոռանար.
արա զմեզ, և քո իսկ եմք արա-
րածք. ժառանգեա զմեզ դու և մի
այլոց լիցուք ժառանգութիւն. ժո-
ղովեա զմեզ 'ի քո տեղին և մի ցր-
ուեսցուք ընդ օտար տեղիս. դար-
մանեա զմեզ տէր, զի հիւանդա-
ցաք, զի մի սատակեսցին ցաւքս և
մեռանիցիմք 'ի մէջ թշնամեաց ։
Ուղղեսցի սուրբ սեղանն անդրէն 'ի
տեղի, ձգեսցին սպասք 'ի պատիւ
սրբութեան. կերիցի մարմին քո
'ի տան քո, և խառնեսցի արիւն քո
'ի խառնելիս ։ Թող մեզ տէր զյան-
ցանս մեր. դարձո զմեզ տէր յեր-
կեւղ քո, և մի շըջեսցուք իբրեւ ըզ-
մոլորականս տանէ 'ի տուն նախա-
չացն ։ Աւ մյր դուրս երթիցուք
կայցցուք, կամ յո՞ր հովանի ապա-

փնտեսցուք։ Մի՛ առներ տէր 'ի բացէ, և մի՛ դներ զմեզ մեր յանդիման քեզ. եթէ մեղաց խնդիր արասցես տէր, ո՞ կարասցէ կալ առաջի քո։ Քո են ողորմութիւնք և գթութիւնք, թող մեզ ձրի որպէս սովոր ես, և հանգո զանձինս մեր զաշխատեալս։

ԻԴ. Եկեղեցիս արեւելից ողբս առեալ զհովիւսն ողբայ. Ո՞ւր են առաքինիքն և ազնուականքն, զի ոչ երեւին 'ի գլուխ հօտին. ո՞ւր իցեն սուրբ քահանայքն և պաշտօնեայքն, զի ոչ թուչին և սլանան 'ի պաշտամանն. ո՞ւր իցեն սեղանքն քաւութեան, զի ոչ գրգին սուրբ Հոգւով ըստ սրբութեանն։ Այլ Ջերմեռանդն արտասուօք վասն քահանայից կոտորելոցն. գոչէ մեծաբարբառ աղաղակաւ վասն պաշտօնէից նահատակաց. կոծ առեալ աշխարհէ վասն ընտրելոցն մորթելոց. ձայն բարձեալ մեծաձայն ճչէ վասն վայելուչ երիտասարդացն զենելոց, կուսանացն սպանելոց. հաչէ հառաչէ

և գուժէ վասն տղայոցն խողխողե-լոց, և վասն սեղանոցն կործանելոց, և վասն սպասուցն եղծանելոց, և վասն գրոց օրինացն պատառելոյ. ասէ. Թերևս յայն սակս կոտորե-ցան օրէնքն, զի ոչ ոք պահէր զճըշ-մարտութիւն օրինացն. և Թերևս տաճարք սրբութեանց յայն սակս մերկացին 'ի զարդուց սպասուցն, զի ոչ ոք կայր 'ի նոսա յաղօթս սրբ-բութեամբ: Գառինք իմ որոջք, ասէ, ընդվայր հարեալ մոլորական շրջին. և առ հովուան հօտերէցս կառաւաչ բարձեալ կողկողին: Առից, ասէ, զողբսն Երեմիայի 'ի բերան, և նոքօք սԹափեցայց 'ի հեծու-Թեանց. և յորդաբուխ ջերմեռանդն արտասուս ողբայր զՅովսիա քաղ-ցրաձայն բարբառովք:

Ո՛վ արք արդարք և կանայք, լա-ցէք յողբսն ձեր զքահանայսն և զպաշտօնեայսն. զի չէք յաշխարհի այլ ողբք ողորմելիք քան զձերդ: Ո՛վ Յովսիա արքայ սպանեալ, որ քա-ւէր զերկիր 'ի պղծութենէն Յորո-բովամու, քանզի՞ նման է սպանումն

քո սպանման քահանայիցն իմոց․ զի և նոքա ըստ իւրեանց ձեռնհասութեանն քաւեցին զերկիր 'ի պղծութենէ կռապաշտութեանն ։ Յովսիա սուրբ քահանայ պղծեաց ըղսեղանս և զբագինս մեռելոցն ոսկերօք․ քահանայք իմ և արդարք որբեցին զսեղանն սուրբ և զպատարագ կենդանի կենարար մարմնոյն ։ Ո՛վ Յովսիա, քանի՛ քաղցր է յիշատակ քո զոր եբարձ Փարաւոն Կաղ 8 զկեանսդ 'ի մարմնոյդ․ վասն զի առ ոչինչ համարեցար զմեռեալ կռուսն որ էին ընդ նմա ։ Ո՛վ քահանայք իմ անարատք, քանի՛ քաղցըր են յիշատակք ձեր, զորոց մարդախանձ և արիւնարբու Թագաւորն եհան զոգիսդ իմաստնոցդ, վասն զի ոչ պագէք երկիր արարածոցն զոր աստուածս անուանէր ։ Անունն քո Յովսիա, ահա բուրէ իբրեւ զբուրուառ որ բորբոքէ զհոտ խնկոց անուշից․ զի քննեցան 'ի մահուն հաւատք քո և երեւեցան հաստատուն ։ Եւ ձեր անունն ո՛վ վկայք, ահա զօրեաց իբրեւ զհոտ անուշ ընդ տիե-

զերս, զի քննեցայք արեամբ հե-
րով և գտայք ճշմարիտք։ Ելաց Ե-
րեմիա զՅովսիա, զբժիշկն իմաս-
տուն, զի կարի պիտոյ էր վերացն
Երուսաղէմի գործանիշն օգնակա-
նութեամբ. լացէք և ես զիմ բը-
ժիշկսն ճշմարիտս, որ վերաց աշ-
խարհիս հանապազ պիտոյ էին մա-
տուցանել օգնականութիւնս հնա-
րիւք։ Քանի՜ նման ես, ով Եղիա-
զար ծերունի, փառք ժողովրդեանն
առաջնոյ, վայելուչ և պատուական
ծերոցն հեթանոսաց. զի զքեզ նե-
ղեցին ուտել միս զոր չէր հնար ու-
տել օրինացն. և զնոսա ստիպեցին
ուտել արիւն զոր չէր օրէն ուտել.
քեզ ետուն խրատ սիրելիք քո ուտել
միս զոր օրէն էր ուտել, և ոչ առէր
յանձն. և զնոսա աղաչէին իւրեանց
սիրելիք ուտել զարիւն խաղողոյ՝
զոր օրէն էր ուտել, և ոչ հաւանե-
ցան։ Դու իմացար իմաստս արժա-
նաւոր քո ծերութեանդ. տես.
Յուղարկելով յուղարկեցէք զիս ՚ի
հող անօրէն խրատուդ. և նոքա ընտ-
րեցին զխորհուրդն ազնուական,

արժանաւոր ըստ իւրեանց հինօրեայ ժամանակացն, ասեն. Առաքելով առաքեցէք զմեզ 'ի մահ: Ո՛վ սպանողք դառնաշունչք. դու ասէիր, թէ վասն սակաւ կենացս՝ յորում ոչ ոք վայելէ, ոչ առնեմ արատ 'ի ծերութեանս իմում. և նոքա ասէին, թէ վասն մշտալից հանգըստեանս՝ ոչ կարեմք դնել բիծ յերկայնակեաց ժամանակս մեր: Դու ասէիր թէ օրինակ բարի թողում յետնոցն. և նոքա ասէին, թէ նշանակ բարի տամք ազգէ յազգ առաքինեաց՝ որ գալոց են զկնի մեր: Երանի՛ քեզ ո՛վ ծեր պատուական, զի ճշմարիտ մտօք պատարագեցար. երանի՛ և ձեզ ծերքք վայելուչք, զի բարիոք կամօք սպանայք: Քանի՛ նման էք ո՛վ եւթն եղբարք երիտասարդմանկունք միոյ որովայնի, բազում եւթանց միաբանելոց երիտասարդաց մանկանց միոյ սուրբ մկրտութեանն. զի զձեզ նեղէին ուտել միս զոհեալ, և զնոսա նեղէին ուտել միս անյագ: Ո՛վ սուրբք և սուրբք նմանողք միմեանց. ո՛վ պարկեշտք, և

պարկեշտք զուգան հասարակաց . ոչ դուք յանձն առէք ուտել զմիսն պղծութեան , և ոչ նոքա հաւանեցան ուտել զսուրբ միսն զանյաղ ։ Դուք սրբեցէք պահօք 'ի պիղծ մսոյն ըստ օրինացն . և նոքա սրբեցան ուխտաւորութեամբ մսոյն ըստ օրինացն ։ Խափանեցան կերակուրք և հաստատեցան կամք . դադարեցին պահպանութիւնք , և երեւեցաւ գործն ազատութեանն ։ Նոյնպէս և զամենայն չարչարանս . զձեզ տանջէին քքովք և չոր ջղ . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . . . . .



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Թիւք. ԻԴ. 24. « Ո՞ք կեցցէ
» յորժամ դնիցէ զայն Աս֊
» տուած, և ելցէ 'ի ձեռաց Կի֊
» տացւոց և չարչարեսցեն զԱ֊
» սուր, և չարչարեսցեն զԵբրայ֊
» եցիս »: Կիտացիք կամ Քիտի֊
մացիք՝ Հռովմայեցիքն են՝ որ չար֊
չարեցին զՀրեայս:

2. Պակասէ « Ցամի հարիւրե֊
րորդի ». քանզի Թագաւորու֊
թիւն Պարսից զՍասանեանցն
արժան է իմանալ՝ որոյ սկիզբն
է յամի տեառն մերոյ 226, յոր֊
մէ ց'343 յորում յարոյց Շապուհ
զհալածանսն, ըստ ստոյգ պատ֊
մութեանց, զոյգ կչիռ 117 ամք
լինին Թագաւորութեանն:

3. Սղակ և Տիսպոն՝ յայլոց պատ֊
մըչաց վարուց Սրբոյս՝ մի քաղաք

համարին , Սելեւկիա—Տիսպոն ,
զի կոչէր մայրաքաղաքն այն Պար-
սից երկաքանչիւր եւս անուամբք ,
վասն հուպ առ հուպ կանգնե-
լոյ Սելեւկիոյ և Տիսպոնի · բայց
է և այլ Սելեւկիա հուպ 'ի Հօշ
քաղաք հին , որ կոչի և Սոլոկ :

4 · Յէջ 25 · անուն քաղաքին որ
պակասի 'ի մերում Թարգմանու-
Թեան՝ 'ի բնագրին Լետան գրի :

5 · Այսինքն է Զօրապետ կամ
գնդապետ :

6 · Թուխ ախուրփ , բառ պարսիկ , որ
է Այտք , և զգեղերեսել շպարել
կանանց նշանակիցէ նկարագործ
անօԹովքն :

7 · Զբառս օտար և որպէս Թուխ
ասորի , վարէ ուրեք և Ստեփա-
նոս Ուռպելեան , և տայ զիմաստ
հոխոնու կամ հակառակ իշխանի:

8 · Կաղ Թարքմանեալ է Նեքոյ
կամ Նեքաով անուն Փարաւոնի :